1916

№ 13.—*Մարտի 20*

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

ԼՈՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ ԿԻՐԱԿԻ ՕՐԵՐԸ

10 կոպէկ

10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** **տարեկան 4** *ռուբլի*, **կէս տարուան 2** *ր.* **50** *կ.* *Բարեգործական Ընկերութեան անդամների, հայ գիւղացիների, ուսուցիչների և հասարակական հիմնարկութեանց համար՝* **տարեկան 3** *ր.*, **կէս տարուան 2** *ր.* *Արտասահման՝* **տարեկան 5** *ր.*, **կէս տարուան 3** *ր.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արաստամբեկեան հրապար.* № 7. **Հեռախօս № 29.**

*Փոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflise, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*

*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերից։*

*Տպագրելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։*

*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*

*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ





ԱՆԻՒՐԻՆ ՈՒԻԼԸՄՍ

**Նախագահ Լօնդոնի լորդ-քաղաքագլխի Հայկական Ֆոնդի գործադիր Մարմնի**

## ՓԱԽՍՏԱԿԱՆՆԵՐԻ ՎԵՐԱԴԱՐՁԸ

«И дымъ отечества сладокъ и пріятенъ» *(Հայրենիքի ծուխն անգամ քաղցր է և դուրեկան)։*

*Անցան ձմրան բուքերն ու ցրտերը. հալչում են լեռների ձիւները, դաշտերում ու այգիներում նկատւում է նորածիլ կանաչ, օդի մէջ լսւում է գարնանային մեղմ ու անուշաբոյր զեփիւռը։*

*Ամենուրեք արթնանում է կեանքը, սկսւում են գիւղատնտեսական և այլ տեսակ դրսի աշխատանքները։*

*Կեանքի այս եռումը, որը բնականաբար առաջ է բերում գարունը, անկասկած ազդում է մեր երկրում ապաստանած հարիւր-հազարաւոր փախստականների վրայ, որոնք պատերազմի արհաւիրքներից ստիպուած գաղթեցին, թողնելով իրենց արիւնաշաղաղ երկիրը։*

*Այժմ այդ փախստականները—մեծ ու փոքր, կին ու մարդ չնայած իրենց կրած տանջանքներին, չնայած որ հէնց նորերս ներկուեց Հայաստանը նրանց մերձաւորների արիւնով ու իրենք էլ անարեկուած փախուստի դիմեցին, կրկին ամենատւժգին կերպով ձգտում են վերադառնալ հայրենիք. նրանց քաշում է հայրենիքի օդն ու ջուրը, նրանց գրգռում է վառ սէրը դէպի իրենց ծննդավայրը։*

*Մեր ցեղի այս յատկութիւնը գովելի է և կարող է պարծանք համարուել։ Մեր ազգի դարաւոր պատմութիւնը ուսուցանում է, որ հայ ազգը նման չէ այն ժողովուրդներին, որ ասում են* ubi bene, ibi patria *(որտեղ լաւ, այնտեղ էլ հայրենիք)։*

*Առաջին անգամը չէ, երբ հայ ազգը աւերման է ենթարկւում, բայց նա երբէք չի բաժանուել իր հայրենի հողից, նա չի հրաժարուել իր ազգային գաղափարից. նա պահպանել է իր լեզուն, կրօնը, կուլտուրան, և նրա ցիրուցան եղած մասնիկները նորից ժողովուել են իրենց հայրենիքում, հաստատուել, աճել ու զարգացել։*

*Երբ ամեն մի հայի մէջ կայ գիտակցութիւն, որ նա պէտք է ապրի իբրև հայ և մեռնի իր «վաթանում», այդ ամենափայլուն ապացոյցն է, որ Հայաստանը նորից կը վերածնուի հայութեան համար, մանաւանդ այժմ, երբ նա գտնւում է մեծ պետութիւնների—Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի բարձր հովանաւորութեան տակ, երբ այդ մեծ պետութիւնները մղում են այս համաշխարհային պատերազմը յանուն արդարութեան և իրաւունքի, յանուն փոքր ազգերի ազատութեան։ Պէտք է յուսալ և սպասել, որ հայի թափած արիւնը կստանայ իր արժանաւոր վարձատրութիւնը։ Արիւնահեղ պատերազմից յետոյ կը բացուի Հայաստանի համար նոր արշալոյս և հայ ժողովուրդը կապրի մարդկային իրաւունքներով, ազատուելով բռնակալական ճնշող լծից։*

*Փախստականների ձգտումը—վերադառնալ հայրենիք, հէնց այժմ անվիճելի փաստ է և ոչ ոք նրանցից խելապէս բարոյական իրաւունք էլ չունի ուրիշ տեսակ մտածելու։ Անպայման պէտք է վերադառնան բոլորը, պէտք է փոխադրուեն երկիր և այն տասնեակ ապաստարանները իրենց հազարաւոր որբ երեխաներով, որոնք ժամանակաւորապէս հիմնուած են մեր երկրում։ Սակայն վերադարձի խնդիրը բարդ և պատասխանատու խնդիր է, պահանջում է լուրջ ուշադրութիւն և մանրամասն մշակում։*

*Արդեօք հասե՞լ է ներգաղթի րոպէն, և եթէ հասել է, ինչպէս պէտք է կատարել։*

*Այսպիսի և համանման հարցեր ծագում են միմեանց յետևից և պահանջում իրենց բաւարար լուծումը։*

*Հայրենիք վերադառնալու փափագը, ինչպէս ասացինք, գովելի է. այդ զգացմունքը և գիտակցութիւնը կենդանի պէտք է մնան, բայց ներգաղթը չպէտք է կատարուի այնպիսի ժամանակ և այնպիսի պայմաններում, երբ վերադարձող ժողովուրդը կարող է ենթարկուել նոր արհաւիրքների և տալ նոր զոհեր, գուցէ ոչ պակաս առաջուանից։ Մեր ժողովրդի ֆիզիքական գոյութիւնը պահպանելու խնդիրը գերագոյն խնդիրներից մէկն է։ Եթէ ի նկատի առնենք երկրի ներկայ դրութիւնը, որ այնտեղ տներ չկան, ուր վերադարձողները պատսպարուէին. խաղաղ հաց չկայ, որ սնունդ ունենան. գիւղատնտեսական գործիքներ չկան, որ հող ու այգիները մշակեն. սերմացու չկայ, որ ցանքս անեն. ուր առողջապահական պայմանները սարսափելի են դիակներից տարածուող գարշահոտութեան պատճառով և ուր վերջապէս այժմ տարածուած են բծաւոր տիֆ և սպառնում է ժանտախտի զարգացումը - մեծ յանցանք գործած կը լինենք, եթէ միջոցներ ձեռք չառնենք կասեցնելու սկսած ներգաղթի հոսանքը։*

*Վերադարձող ժողովուրդը կարող է կոտորուել սովից և հիւանդութիւններից, եթէ նոյնիսկ մէկ կողմ թողնենք պատերազմական անակնկալները։*

*Ներգաղթը պէտք է կատարուի խորապէս մտածուած, բազմակողմանի քննուած և լաւ մշակուած ծրագրով։ Վաղօրօք պէտք է որոշուին այն շրջանները, ուր կարող են վերադառնալ փախստականները և կանխաւ ստանալով զինուորական իշխանութեան համաձայնութիւնը, ճանապարհներին պէտք է բաց անել անվտանգ կայաններ, իսկ շրջաններում պատրաստել վերադարձողների համար սնունդ մինչև առաջիկայ հունձը, այլ և գիւղատնտեսական գործիքներ և սերմացու, կազմակերպել բժշկական և ֆէլդշերական կայաններ։ Ներգաղթողների առաջին խմբերը պէտք է լինեն աշխատանքի ընդունակ տղամարդիկ, որոնք աւելի դիմացկուն են ծանր պայմաններին դիմադրելու և որոնց վաղօրօք գնալը հարկաւոր է աշխատանքների համար։ Ընտանիքները առ ժամանակ պէտք է մնան մեր երկրում, մանաւանդ որ նրանց ապրուստը այստեղ չափաւոր կերպով ապահովուած է. վերջին պահուն սրանք էլ կուղևորուին երկիր, ուր, պէտք է յուսալ, կվերադառնան և հին ու նոր գաղթականները Ամերիկայից, Ռումինիայից, Բուլղարիայից և այլ տեղերից, որպէսզի հայրենիքը նորից շէնանայ, որ ամեն մի հայ գիւղից ու տնից բարձրանայ այն ծուխը, որի մասին ռուսաց հռչակաւոր գրողներից մէկը ասել է՝ «հայրենիքի ծուխն անգամ քաղցր է և գուրեկան»։*

*Որպէսզի ներգաղթը կատարուի մշակուած ծրագրով, մեր ազգային կազմակերպութիւնները, որոնք զբաղւում են փախստականների օգնութեան գործով, պէտք է ժողովուեն և միասին այդ հարցը քննեն։*

*Հարցը հրատապ լուծում է պահանջում, պատասխանատուութիւնը մեզ վրայ է ծանրանում։*

---

## ՆՈՒԷՐՆԵՐ

«Համբաւաբերի» տարածման համար

*Պ. Ա. Ասատրեանը «Համբաւաբեր»ի այս տարուայ մի օրինակ նուիրում է Թիֆլիսի Ծիրանաւորի որբանոցին։*

---

*Պ. Կարապետ Թալաթեանի հաշւով «Համբաւաբեր»ի մի օրինակ ուղարկւում է Վանի որբանոցին և մի օրինակ ևս Կրասնավոդսկի (Անդրկասպեան երկիր) Հայոց դպրոցին։*

---

# Համաշխարհային պատերազմը

### ՏԱՃԿԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

*Կովկասեան ճակատի վրայ ռուսների առաջխաղացութիւնը այս շաբաթ աւելի դանդաղ էր կատարւում։ Համեմատաբար ուժեղ էր շարժումը աջ և ձախ թևերի, այսինքն ծովամերձ և Վան—Բաղէշ գծերի վրայ։*

*Ծովամերձ շրջանում ռուսներին յամառ կռիւներից*

յետոյ յաջողում է դուրս մղել թշնամուն Բալթաջի-դարասու գետափնեայ դիրքերից և գրաւել Օֆ քաղաքը։ Այս քաղաքը, որ Տրապիզոնից ընդամենը 40—45 վերստ հեռու է գտնւում՝ առաջապահ դիրք է հանդիսանում այդ նաւահանգստի համար։ Այդ պատճառով էլ թիւրքերը մինչև իսկ գիշերային հակայարձակումներով, որ նրանք այնքան էլ չեն սիրում, աշխատում են յետ խլել ռուսներից, սակայն այդ չյաջողուեց։ Թիւրքերը նահանջել են դէպի Տրապիզոնի գլխաւոր ամրութիւնները, որոնց վրայ և պէտք է սպասել վճռական գործողութիւններ՝ այդ քաղաքը գրաւելու համար։

Վան—Բաղէշի շրջանում ռուսները առաջացել են մինչև Խիզան աւանը, որ և գրաւել են։ Այս գծի առաջ տանելը այժմ խիստ անհրաժեշտ է։ Մինչդեռ ռազմաճակատի աջ թևը առաջ է գնացել գրեթէ մինչև Տրապիզոն՝ ձախը դեռ Բաղէշից հարաւ-արևելք է գտնւում։ Սրանով ռազմաճակատը շեղ ուղղութիւն է ստանում և բաւական երկարում։ Խիզանի գրաւումը փոքր ինչ ուղղում է Կովկասեան ճակատը և որոշում ապագայ առաջխաղացութեան ուղղութիւնը։ Թուրքերն ըստ երևոյթին գիտակցում են այս հանգամանքը, ուստի և, ինչպէս մամուլի աղբիւրներից տեղեկանում ենք, բաւական խոշոր ոյժեր են կենտրոնացրել Տիգրանակերտից մինչև Սղերդ։

Ռազմաճակատի կենտրոնում՝ Կարին—Երզնկա գծով ռուսները շարունակում են առաջ գնալ դէպի արևմտեան Եփրատ՝ ճանապարհին կոտրելով և գերելով պատահած թիւրք զօրախմբերը։

ԲԱԼԿԱՆԵԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Սալոնիկի շրջանում գործողութիւններն սկսում են կենդանանալ։ Գերմաններն ու բուլղարները շարունակում են գրաւել չէզոք հողաշերտի գիւղերը։ Տեղական յոյն ազգաբնակութիւնը ահաբեկուած բուլղարների վայրագութիւններից՝ փախչում է դէպի երկրի ներսերը, իսկ կառավարութիւնը դեռ շարունակում է լուռ հանդիսատեսի դեր կատարել այս բոլորի հանդէպ։ Դաշնակիցների և թշնամիների ընդհարումներն առայժմ դեռ թնդանօթամարտի և օդամարտի շրջանում են գտնւում։ Այս շաբաթ 22 սաւառնակից բաղկացած ֆրանսական մի տորմիղ ռմբակոծում է գերմանական բանակատեղը՝ մեծ վնասներ պատճառելով թշնամուն։ Դրանց դէմ դուրս են գալիս գերմանական սաւառնակները, տեղի է ունենում մի կատաղի օդամարտ, որի միջոցին երկու կողմից էլ սաւառնակներ են վնասւում և վայր ընկնում։

ԱՒՍՏՐԱ-ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՌԱԶՄԱԲԵՄԸ

Արևելեան ճակատում մարտի 4-ին սկսուած կռիւը շարունակւում է բոլոր գծերում։ Գործողութիւնների գլխաւոր վայրերն են Ռիգայի, Եակոբշտադտի և Դուինսկի շրջանները։ Ամբողջ ռազմաճակատի վրայ գերմանացիք ընդհանրապէս կամ պաշտպանւում են և կամ հակայարձակումներ կատարում, որ նոյնպէս պաշտպանողական կռիւ կարող է համարուել։ Ըստ վերջին պաշտօնական հաղորդագրութեան՝ հալոցքն արդէն լիակատար ընթացքի մէջ է։ Ամբողջ ռազմաճակատի ուղղութեամբ ցրուած լճերը մասամբ ափերից դուրս գալով և մասամբ իրար հետ միանալով՝ կազմում են ընդարձակ ջրային տարածութիւններ, որոնք խիստ դժուարացնում են զօրքի շարժումները և մանաւանդ թնդանօթների տեղափոխութիւնը։

Վերջին շաբթուայ կռիւներում ռուսները գերել են մօտ 20 սպայ և 2000 զինուոր։ Նրանք խլել են թշնամուց նաև 6 թնդանօթ, մօտ 20 գնդացիր, բազմաթիւ հրացաններ և ռազմամթերք։

Նկատելի է, որ թշնամու թիկունքում ինչ-որ զօրաշարժեր և տեղափոխութիւններ են կատարւում, որոնց արդիւնքը կերևայ հալոցքից յետոյ։

Արևմտեան ճակատում այս շաբաթ կռիւներ էին տեղի ունենում բոլոր գծերի վրայ։ Անգլիական ճակատի վրայ ականամարտն ու օդամարտը կատաղի բնոյթ են առել։ Վերջին կռիւների ժամանակ անգլիացիք տիրելով մօտ 600 եարդ խրամատի, բաւական մարդ են կոտորել թշնամիներից և մօտ 360 մարդ գերի առել։

Արգոններում եւ այս շաբաթ լուրջ կռիւներ կային հետևակի մասնակցութեամբ։ Ֆրանսացիներին յաջողուել է մի քանի գերմանական խրամատներ և ամրութիւններ գրաւել և գերմանացիների բոլոր յարձակումները յետ մղել։

Վերդէնի մօտ այս շաբաթ էլ կռիւները շարունակուեցին։ Վեց օրուայ անընդհատ թնդանօթաձգութեամբ ֆրանսացոց ամրութիւնները ռմբակոծելուց յետոյ՝ գերմանացիք ամսոյս 15-ի ցերեկուայ ժամը 3-ին մօտ 20 հազար հոգով յարձակուեցին Աւօկուր-Մալանկուր մի վերստաչափ գծի վրայ՝ Մալանկուր գիւղը գրաւելու դիտաւորութեամբ։ Սակայն ֆրանսական թնդանօթներն ու գնդացիրները յետ մղեցին այս յարձակումը՝ թշնամուն ահագին կորուստ պատճառելով։ Դրանից յետոյ գերմանացիք փորձում են իրենց բաղդը Բետանկուր-Մորտոմ—Կիւմիէր գծի վրայ, բայց բախտն այս անգամ էլ նրանց չի ժպտում։ Գերմանական կորուստներն սոսկալի են։ Մինչև այս վերջին յարձակումները նրանք մօտաւոր հաշուով կորցրել են 275 հազար մարդ, կրակել են մօտ 15 միլիոն ռումբ և փչացրել ահագին քանակութեամբ թնդանօթներ։ Այս վերջին կռիւներից յետոյ այս թուերը բնականաբար աւելի եւ պէտք է մեծացած լինեն։ Սակայն այսու հանդերձ նրանք շարունակում են յարձակումները՝ որևէ յաջողութեամբ այս կորուստներն արդարացնելու յուսով։

Ֆրանսացիք դիմադրում են թշնամուն օրինակելի քաջութեամբ և անձնուիրութեամբ։ Նրանց հերոսութիւնը վեր հանելու և Վերդէնի քաջարի պաշտպաններին աւելի եւս կորով ներշնչելու համար՝ գեներալ Ժոֆրն այս շաբաթ մի շատ սրտառուչ հրամանագրութիւն էր ուղղել նրանց, որի մէջ նա բացատրում է Վերդէնը պաշտպանելու նշանակութիւնը Ֆրանսիայի համար։

Իտալական ճակատի վրայ այս շաբաթ կռիւները շարունակւում էին բոլոր գծերի վրայ սովորական թնդա-

նօթամարտով և ականամարտով։ Մի քանի տեղ աւստրիացիք փորձում էին գործողութեան նախաձեռնութիւնն իրենց վրայ առնել, բայց ընդհանրապէս անյաջողութեան էին հանդիպում։ Վերջին օրը կռիւները կատաղի բնոյթ էին ստացել Սէլլէխոի, Ֆրէյկոֆելի Կաւալլօ լեռնանցքի և Պալպիկոլլոյի մօտ։ Իտալացիները այդ կռիւներում մի քանի անգամ սուինամարտի են դիմում թշնամուն իր դիրքերից դուրս մղելու համար, որոնց ժամանակ գերում են մօտ 70 մարդ։

ԾՈՎԻ ՎՐԱՅ

Այս շաբաթ ռազմանաւերի մի քանի կռիւներ տեղի ունեցած։ Գերմանական «Գրէյ» օժանդակ յածանաւը կռուի բռնուեց անգլիական զինուած առևտրանաւերից մէկի հետ, որի միջոցին երկու նաւն էլ խորտակուեցին։ Անգլիացիներից խեղդուեցին 69 մարդ, իսկ գերմանացիք տուին 170 խեղդուած և 130 գերի։ Բացի այդ՝ անգլիական հակասուզանակիր նաւերի մի ջոկատ արշաւանք է կատարում դէպի գերմանական ափերը և խորտակում երկու տրալէր։ Արշաւող նաւերից խորտակուել է մէկը «Մէդուզան»։ Վերջի շաբթուայ ընթացքում գերմանական սուզանաւերն ու ականները անգլիական մի քանի առևտրանաւ են խորտակել։ Ընդհանրապէս նկատելի է, որ ցամաքային գործողութիւնների կենդանանալու հետ ծովի վրայ ևս սկսուել է համապատասխան կենդանութիւն։

* * *

# Ներքին տեսութիւն

## ՊԵՏԱԿԱՆ ԴՈՒՄԱՆ ԵՒ ՀԱՅԵՐԸ

«Համբաւաբերի» անցեալ համարում մենք տուինք հայ պատգամաւոր Մ. Պապաջանեանի ճառի համառօտութիւնը, այնպէս, ինչպէս նա հաղորդուած էր հեռագրով։ Մայրաքաղաքի լրագրները բերին պ. Պապաջանեանի ամբողջ ճառը, որից մենք տեսնում ենք, որ հայ պատգամաւորը երկարօրէն կանգ է առել հայերի դրութեան վրայ և խիստ քննադատութեան է ենթարկել Կովկասեան բիւրոկրատիայի քաղաքականութիւնը Կովկասեան ազգութիւնների վերաբերմամբ։ Այդ քաղաքականութիւնը, մեծ իշխան Միքայէլ Նիկոլաեւիչի փոխարքայութիւնից յետոյ, հիմնուած է եղել կովկասեան ազգութիւնները իրար հետ կռուեցնելու սկզբունքի վրայ։ Հայերն այդ քաղաքականութեան տեսակէտից դարձան քաւութեան նոխազներ։ Նրանց սկսեցին մեղադրել իբրև Ռուսաստանին անհաւատարիմ մի տարր, որ ձգտում է անջատականութեան, սեպարատիզմի։ Յանցանք էր համարւում որ ռուսահայերը աշխատում էին օգնել իրանց թիւրքահայ եղբայրներին ազատուելու թիւրքական լուծից։ Ռուս-թիւրքական սահմանագլխի վրայ ռուս և թիւրք իշխանութիւնները հրացանի էին բռնել տալիս հայ հայդուկներին, որոնք գնում էին կռուելու թիւրքերի դէմ։ Այսօր այդ նոյն հայդուկները կռւում են նոյն թիւրքերի դէմ ռուսաց զօրքերի շարքերում և այսօր այլևս յանցանք չէ թիւրքահայկական դատը։ Այժմ ամբողջ աշխարհին յայտնի է թէ ում կողմն են հայերը։ Միայն կովկասեան բիւրոկրատիան է, որ չէ խրատուել և շարունակում է իր նախկին վերաբերմունքը դէպի կովկասեան ազգութիւնները։ Պ. Պապաջանեանը կենդանի օրինակ է բերում Կարսի նահանգապետի հրատարակած հրամանները, որոնց մէջ մեղադրում էր քրիստոնեաներին (հայերին) թէ նրանք յարձակուել են ռուսահպատակ մահմեդականների վրայ, եւ այսպիսի մի մեղադրանքը բարդւում էր այն ժամանակ, երբ հայերն անհագին զոհողութիւններ էին անում պատերազմի պատճառով։ Բաւական է յիշատակել հէնց այն, որ հայ գիւղացութիւնը բռնակրութիւն է անում իր անասուններով, խրամատներ է փորում յաճախ առանց վարձատրութիւն ստանալու, որովհետև ագէտ է և հասկացողութիւն չունի օրէնքների մասին։ Պատգամաւորը իրաւացի է համարում որ այժմեան Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլայեւիչը հրամայել է դադարեցնել աջարացիների գործը և յոյս ունի, որ նոյն կերպով կը դադարեցուի Կարսի շրջանում հայերի դէմ սկսուած դատաստանական գործը։

Դիմելով այն միջոցներին, որոնք կարող են վերացնել տարիների ընթացքում հաստատուած այս անարդար և պետական տեսակէտից վնասակար ուղղութիւնը, պ. Պապաջանեանը գտնում է որ այս երկրին հարկաւոր է ռէֆորմ, որի հիմքը պիտի լինի միատեսակ և համահաւասար վերաբերմունք դէպի բոլոր ազգութիւնները։ Այս ուղղութեամբ էր կառավարում մեծ իշխան Միխայէլ Նիկոլայեւիչը և այս պատճառով էլ թողել է Կովկասի ամբողջ ազգաբնակութեան մէջ շատ գեղեցիկ յիշատակներ։ Նոյն սկզբունքն է յայտարարել և այժմեան Փոխարքայ Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլաեւիչը։ Իբրև մի մեծ պակասութիւն՝ Պապաջանեանը ցոյց է տալիս այն, որ տեղական ազգաբնակութիւնը քիչ մասնակցութիւն ունի երկրի կառավարութեան մէջ։ Պաշտօնեաների մեծագոյն թիւը ռուսներից է, այնուհետև գալիս են վրացիները, թուրքերը. իսկ հայերը բոլորովին չնչին թիւ են կազմում։ Ռուսական բիւրոկրատիան կառավարում է երկիրը առանց նրա բնակիչների լեզուն իմանալու, նրանց բարքերը ճանաչելու։ Արդարադատութիւնը կատարւում է անգրագէտ թարգմանների միջոցով, որոնք ստանում են չնչին ռոճիկներ, բայց յետ են ընում մեծ կարողութիւն։ Բիւրոկրատիային ձեռնտու չէ այլ կերպ վարուելը։ Նա է, որ չէ ուզում Կովկասի մէջ զեմստւոյի ինքնավարութիւն մտցուի և գրգռում է տգէտ ազգաբնակութեանը նոյնիսկ պաշտօնական դիմումներ անել թէ ինքը չէ ուզում զեմստւօ։ Ի վերջոյ Պապաջանեանը յոյս է յայտնում որ այժմ Կովկասը Մեծ Իշխան Նիկոլայ Նիկոլաեւիչի ղեկավարութեամբ կը մտնէ բարենորոգումների և առաջադիմութեան մի նոր շրջան։

Մարտի 10-ին Դուման սկսեց քննել արտաքին գործերի մինիստրութեան բիւջէն։ Այս առիթով մի մեծ քաղաքական ճառ ասաց պատգամաւոր Միլիւկովը և ուրիշ հարցերի թւում խօսեց նաև թիւրքահայերի մասին։ Մի ուրիշ ճառ էլ արտասանեց դարձեալ թիւրքահայերի մասին պատգամաւոր Պապաջանեանը։

Այս երկու ճառերը մենք կը տանք հետևեալ անգամ։

---

## ԷՐԶՐՈՒՄԻ ԱՆՑԵԱԼԻՑ *)

Է

### ՀԱՅԵՐԻ ԴՐՈՒԹԻՒՆԸ

Վերջացաւ պատերազմը։ Լռեցին թնդանօթները, արիւնհեղութիւնը դադարեց։ Խաղաղութիւն էր իջնում յաւիտեան անխաղաղ, արիւնով ծնուած Թիւրքիայի վրայ, մի խաղաղութիւն, որ գնուած էր նոր յօշոտումների ծանր գնով։ Օսմանեան անիծեալ լծի շղթաները ջարդելով նոր լոյս աշխարհ էին գալիս յարութիւն առնող ազգեր։ Զինադադարի պայմաններով ստեղծուած էր մի նոր համարեա ինքնագլուխ Բուլղարիա, ինքնավարութիւն էին ստանում Բոսնիան ու Հերցեգովինան, անկախ էին ճանաչւում Սերբիան, Ռումինիան։ Ազատութեան թարմ, պատանի երգն էր դուրս գալիս աւերակների, գիւղերի տակից և զուարթ հնչում էր պատերազմական տխուր դաշտերի վրայ։

Մի տեղ միայն կար Թիւրքիայում, ուր ազատութեան բա-

*) Տես «Համբաւաբեր» № 12։

անդի Ցաղձամելիք անցնելով, մարդ մը վիրաւորեցին, կը թողումք սանել ցորեն, գարի, ոչխար և այլ բաներ որ աւարառուեցան։ Եւ անդի անցան ի Խըրթ. նոյն տեղի բէյխը ի կոձեդս սպնելով, հազիւ կիսակենդան ազատեցաւ, սակայն ընտանեաց մէջ խառնակեցան մինչև յառաւօտ և ցորեն, գարի, ձի, ոչխար և այլ ստացուածքներ առնելով, վերադարձան։

«Գալով ներկայ եղելութեանց մասին, ռուսի տիրած գիւղերէն յետս նահանջեցին և հեռահետէ գաւառէն քաշուելու դրից մէջ ըլլալնին տեսնելով, պարտաւորուեցանք ներքոյ կնքեալ անձինքս ի դիմաց համայն ժողովրդեան Կարին գալ և Կարնոյ Ազգային բարեգործ վարչութեան բողոքել յանմիջական տնօրինութիւն անպատսպար գաւառիս, որ եմք Խնուս գաւառի հայ գիւղականքս։ 1878 փետր. 20» (10 ստորագրութիւն և կնիքներ)։

Ռուսները հեռանում են—ինչ անել։ Բայց Երզումը ինչ կարող էր անել։ Նա ինքն էլ ահով սպասում էր այն օրին, երբ ռուսները պիտի թողնեն գնան։ Եւ ժողովրդի մէջ ուժեղ ու հրամայողական մղումներով խօսել սկսեց դարաւոր բնազդը։ Գաղթել քանի որ ազատութիւն չը կայ երկրում, հեռանալ հայրենիքից՝ թիւրքի ձեռքի տակ չը մնալու համար։

Այս մի ճիչ էր, որ տարածուեց ամբողջ Թիւրքաց Հայաստանում։ Եւ այդ տարերային շարժման սիրտն էր դառնում հէնց ինքը Երզրումը։

(Կը շարունակուի) Լէօ

## ԳԱՒԱՌ

ՏՈՒԱՊՍԷՆ Սև ծովի եզրին կարևոր և վաճառաշահ գիւղաքաղաքներից մինն է և ծաղկում է մանաւանդ շնորհիւ իւր նոր կառուցուած երկաթուղուն։

Գիւղաքաղաքիս հայութիւնը մօտաւորապէս 32 ընտանիք է։ Շուրջ 20-ի չափ երկու սեռի երախաներ, որոնք թափառում են փողոցներում և մատնուած են այլասերման շնորհիւ ծնողների անհոգութեան։ Տեղումս չկայ որևէ բարեգործական հաստատութիւն, ոչ դպրոց և ոչ եկեղեցի։

Տեղիս երիտասարդական ոյժը հազիւ հաղ 25-ի մօտենայ, բոլորը Տաճկաստանից գաղթած վերջի մի քանի տարուայ ընթացքում, բոլորն ալ արհեստաւոր ու միջակ կարողութեան տէր և նմանապէս պատրաստ մօտ ժամանակամիջոցի մէջ նորից վերադառնալ հայրենիք։

Տուապսէն ունի իւր շրջանի վրայ բաւականին հայ գիւղեր, նմանապէս Տաճկաստանից գաղթածներ, որոնք ծխախոտի մշակութեամբ են զբաղուած. խեղճ վիճակի մէջ են. թէև մէջները գտնւում են հարուստներ, բայց մատի վրայ կարելի է համրել։

Մօտ մի տարի է կազմուած է տեղական կոմիտէ օգնութեան հասնելու կարօտեալներու և ազգային օգտակար շարժումներու նպաստելու, որի գործունէութիւնն եղաւ մի քանի տասնեակ կամաւորներ ուղարկել և 10-ի չափ փախստականներ պահել, որոնք սակայն, մի քանի ամիս մնալով հեռացան խեղճերը։ Տեղւոյս փոքրաթիւ երիտասարդութիւնը վերջապէս մտածեց, որ գոնէ եղած գործը հաստատ հիմքերու վրայ դնէ և շարունակուի, ինչպէս որ պէտքն է օգտակար լինել հանրութեան։

***

ԱԽԱԼՑԽԱ, 6 մարտի.—Տեղացի Յովհաննէս Ազարէզեանը, իւր հանգուցեալ հօր՝ Մատթէոսի յիշատակին նուիրեց Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղին 300 ր., որը իբրև անձեռնմխելի գումար, ճիւղի անունով տրուելու է որևէ գանձարանում, որի տոկոսով քաղաքիս հայոց Եղիսաբէթեան օրիորդաց դպրոցում իւր հանգուցեալ հօր անունով պահուելու է մի աշակերտուհի։ Ընկերութեան վարչութիւնը այդ գումարը պահ տուեց որոշեալ տոկոսով տեղական փոխատու վարկային ընկ. գանձարանում. առաջիկայ ուսումնական տարուանից գործադրուելու է նպատակին։

Տեղացի պ. Բայբուրդցեանը, նոյն ընկերութեան տեղական գրադարանին նուիրեց «Մշակ» և «Նոր-Դար» օրաթերթերի 7 տարուայ բոլոր համարները, սկսած 1892 թուից մինչև 1898 թիւը։

—Քաղաքումս կարմրուկ հիւանդութիւնը աւելի լայն ծաւալ է ստացել, նոյն իսկ դպրոցների սաներից շատերը այդ հիւանդութիւնով վարակուել են։ Փետրուարի վերջերից սկսած, մեղանում սկսուեցին գարնանային եղանակները, այժմ բաւականին տաք է, իսկ շրջակայ դաշտերը և սարերը արդէն սկսել են կանաչել։

— Կիրակի, ամսիս 6-ին, մեծ հանդիսով տեղի ունեցաւ Սիբիրի կազակների 2-րդ գնդի վախմիստր Ստեփան Կրիւկովի մահարձանի օրհնութիւնը։ Այդ կազակը վիրաւորուել էր 1964 թ. դեկտ. 21-ի, Արդահանի յետ առման կռւում, որ հասնելով Ախալցխա վախճանուեց և թաղուեց քաղաքիս օրթոդոքսների գերեզմանատանը։ Թէ հանգուցեալի և թէ նրա գնդի շնորհիւ էր, որ գլխաւորապէս թուրքերը կխաճանապարհին յաղթուեցին, որով ազատուեց թէ Ախալցխան և թէ Ախալքալաքը նրանց աւերիչ մուտքից։ Այդ մահարձանը կանգնեցրուեց ախալցխացիների կողմից տրուած դրամի օժանդակութեամբ։ Օրհնութեանը ներկայ էին խուռն անհամար երկսեռ բազմութիւն, զինուորներ և այլն։

Թ.

***

ԼԱԳՈԴԱՂ.— Մթերքների գինը օրէ ցօր բարձրանում է, որի շնորհիւ գլխաւորապէս չքաւոր դասակարգը անելանելի վիճակի մէջ է գտնւում. սակագինը լոկ թղթի վրայ գոյութիւն ունի, հսկողութիւնը շատ թոյլ է։

Շուկայում մթերքները հետևեալ գներով են վաճառւում՝

Հացը առաջին տեսակի 9 կ., իսկ պատերազմից առաջ 5 կ., երկրորդ տեսակի 8 կ., առաջ 3 կոպէկ, տաւարի միսը 20 կ. — 8 կ., ոչխարինը՝ 30 կ.—12 կ., կարագը՝ 1 ռուբ.—25 կ., շաքարը՝ 29 կ.—18 կ., լուցկին 35 կ.—12 կ., նաւթ 8 կ.—6 կ., հաւը 2 ռ.—50 կ., տեղական ալիւրը 3 ռ. 60 կ. փութը—1 ռ. 50 կ., գարին 2 ռ. 40 կ.—70 կ., եգիպտացորենը 2 ռ. 40 կ.—60 կ., գետնախնձորը 2 ռ. 40 կ.—40 կ., սոխը 6 ռ.—80 կ., հասարակ չիթը, որ առաջ ծախւում էր 12 կ., այժմ 35 կ. և այլն։

***

ԱԼԷՔՍԱՆԴՐԱՊՈԼ.—Որբեր շրջանումս բաւական կան, բնակարան էլ այժմ կարելի է ձեռք բերել աւելի աժան, տարեկան մինչև 800 ռ. վարձով, ուր կարելի կըլինի տեղաւորել մինչև 50 որբ, պահանջած բոլոր յարմարութիւններով։ Որբանոցի կահաւորման իւրաքանչիւր անհատի համար հարկաւոր է 20 ռ., երկու շաբաթ չանցած որբանոցը կազմ և պատրաստ կը լինի։

## ՏԱՐԵԳԻՐ ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը, համաձայն կտակի հանգուցեալ բարերար Յովհաննէս Խուդաղեանի, Լուսաւորչի տօնին, շաբաթ օրը, ամսիս 26-ին, կատարելու է հանդիսաւոր հոգեհանգիստ Մողնու եկեղեցում, հանգուցեալի գերեզմանի վրայ, նոյն եկեղեցու գաւթում։ Խորհուրդը դիմել է Ներսիսեան դպրոցի հոգաբարձութեան խնդրելով այդ օրը, ս. պատարագին, ուղարկելու դպրոցի երգեցիկ խումբը և ներկայ լինելու աշակերտների հետ միասին։

***

Կ. Հ. Բ. Ընկերութեան Խորհուրդը իւր վերջին նիստում ինկատի ունենալով գրականագէտ Գր. Բալասեանի և հանգ. Աշոտ քահ. Տէր-Իսրայէլեանի այրու՝ վարժուհի Սոֆիա Տէր-Իսրայէլեանի խնդիրները, որոշեց տալ միանուագ նպաստ առաջինին 50 ռ. (50 ռ. էլ տուել էր առաջուց) և երկրորդին 150 ռուբ.։

***

Կ. Հ. Բ. Ընկերութիւնը ստացել է տ. Նինա Ցիցիկեանից յօգուտ ընկ. ճաշարանի 50 ռ. ի յիշատակ իւր վաղաթառամ դուստր օր. Անէլայի։

***

Կ. Ս. Օսիպովից ի յիշատակ իւր եղբայր Օ. Ս. Օսիպովի յօգուտ չքաւորների ստացուած է 40 ռ. Тиф. Лист. խմբագրութեան միջոցով։

***

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացաւ պ. Մարկ Իսայիչ Դոլուխանեանից 1915/16 ուս. տարուայ դպրոցական նպաստ 300 ռուբլի։

***

Կ. Հ. Բ. Ը ն կ ե ր ո ւ թ ի ւ ն ը, համաձայն ընկերութեան բարերար, հանգուցեալ Սմբատ Առաքելեանի կտակի, ստացաւ նրա կեանքի ապահովագրութիւնը 10,000 ռ.։

***

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԷ

Հ. Կ. Կոմիտէի վերջին ստացած հ ե ռ ա գ ր ե ր ը հաղորդում են հետեւեալը.

1\. Ի գ դ ի ր. Ա. Շարաֆեանից։ Կազմակերպեցի տրանսպորտ. գնեցի Կենտրոնականի հաշւով 21 ձի երկանիւ սայլերով, տուի 5000 ռ.։ Սայլերը պէտք է բանեն Իգդիրից մինչեւ Խնուս եւ Մուշ, փոխադրելով փախստականների համար շորեր եւ ուտելիք։

2\. Ի գ դ ի ր. Ա. Շարաֆեանից։ Շտապեցէք ուղարկել ձեր որոշած բժշկական խումբը. փախստականների մէջ հիւանդութիւններ շատ է տարածուած։

3\. Ա ր դ ա հ ա ն. Կ. Հ. Բ. Ընկ. ճիւղի վարչութեան նախագահ Մինասեանից։ Փախստականների նպաստի բաժանումն ուշացաւ. քաղցած են, խնդրեմ հեռագրով փոխադրէք գէթ 300 ռ.։

4\. Պ ե տ ր ո գ ր ա դ. Պետական Դումայի անդամ Միք. Պապաջանեանից։ Կառավարութիւնը համաձայն Փոխարքայի դիմումի, որոշեց տալ 900,000 ռ. բաց անելու սննդի պահեստներ եւ խանութներ փախստականների համար։

5\. Պ ե տ ր ո գ ր ա դ. պ. Պապաջանեանից։ Ներքին գործոց նախարարը թոյլ տուեց կազմել Պետրոգրադում հայկական կազմակերպութիւնների ներկայացուցիչներից համագումար փախստականների մասին։ Հեռագրեցէք, երբ էք յարմար գտնում հրաւիրել համագումարը։ Փախստական երեխաների դպրոցների համար յոյս ունեմ ստանալ նպաստ. կը հեռագրեմ հետեւանքը։

6\. Պ ե տ ր ո գ ր ա դ. Հայկ. Կոմիտէի նախագահ պ. Ղուկասեանից։ Ներքին գործոց նախարարին կից Առանձին Խորհրդակցութիւնը պահանջում է ներկայացնել տեղեկութիւններ որբանոցների, որբերի եւ նրանց ծախսերի մասին մինչեւ 1-ը յունուարի. խնդրեմ հեռագրով հաղորդէք այդ տեղեկութիւնները։

17 մարտի Կենտ. Կոմիտէի գործադիր մարմինը որոշեց՝ 1) Արդահան փոխադրել 300 ռ., 2) պ. Պապաջանեանին պատասխանել, որ համագումարը յարմար է հրաւիրել ապրիլի երկրորդ կէսին, 'ի նկատի առնելով, որ այժմ այստեղ շատ հրատապ եւ պատասխանատու կատարելիք գործեր կան, 3) պ. Ղուկասեանի հեռագրի առթիւ որոշուեց հեռագրով հաղորդել, որ փախստական երեխաների ապաստարանների թիւը 42 է, երեխաների թիւը 3,872 եւ մինչեւ յունուարի 1-ի ծախսուած գումարն է 196,984 ռ., 4) Առաջարկել պ. Ա. Շարաֆեանին կրկին գնել 19 երկանիւ մէկ ձիանի սայլեր, չորս ֆուրգոն եւ 25 աւանակ, եւ տալ նրան դրա համար 16,200 ռ.։ Գնել մէկ վագոն շաքար եւ 5 վագոն ալիւր եւ ուղարկել Իգդիր, իսկ այնտեղից տանել Խնուս, Ղարաքիլիսա եւ այլ տեղեր բաժանելու փրկուած հայերին։ Բացի առաջուայ բժշկական խմբից Մուշի եւ Խնուսի համար, կազմել երկրորդը Ղարաքիլիսայի եւ շրջակայքի համար։

Մուշի եւ Խնուսի շրջաններում գտնուել են 2000 հոգուց աւելի որբ։ Կենտ. Կոմիտէի գործադիր մարմինը որոշեց Դիադինում եւ Ղարաքիլիսայում բաց անել ապաստարաններ՝ երեխաների մի մասը այնտեղ տեղաւորելու համար, իսկ մնացեալը բերել Կովկաս եւ այստեղ նոր ապաստարաններ բանալ։

***

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷԻ ՍՏԱՑԱԾ ԳՈՒՄԱՐՆԵՐ

1\. Պետրոգրադի Հայկական Կոմիտէի միջոցով փախստական երեխաների ապաստարանների համար 43,000 ռ.։

Փոխարքայի դիւանատնից կրկին նոյն նպատակի համար 90,000 ռ.

***

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹԻՒՆ

Փախստականներին նպաստող հինգ Հայկական կազմակերպութիւնները Թիֆլիսում գտնուող Կովկասի Հայոց Բարեգ. Ընկ., Հայկ. Կենտ. Կոմիտէն, Նպաստամատոյցը, Վերաշինութեան ընկերութիւնը եւ Հայոց Գիւղատնտեսական ընկ-ը, վերջին օրերս քննում էին փախստականների օգնութեան գործում համերաշխ գործունէութեան խնդիրը։ Ամսիս 17-ին այդ ընկերութիւնների վարչութիւնների ներկայացուցիչները ունեցան միասին նիստ եւ վերջնականապէս եկան համաձայնութեան եւ արձանագրեցին, որ այսուհետեւ պէտք է գործեն համերաշխ, լինելու է մի ներկայացուցչական մարմին, որի մէջ մտնելու են ամեն մի ընկերութիւնից երկու անդամ։ Այդ մարմինը կոչուելու է Մ ի ա ց ե ա լ Կ ո մ ի տ է. ընդհանուր դիմումներ կառավարութեան եւ հասարակութեան միջոցների համար արուելու են այդ Կոմիտէի անունից, ստացուած գումարները այդ Կոմիտէն բաժանելու է ընկերութիւններին ըստ իր ընտրած աշխատանքի կամ շրջանի։ Առաջին դիմումն այդ Մարմնի կողմից կը լինի կառավարութեան սերմացուի համար. պատրաստւում է նախահաշիւ մի քանի միլիոնի։

***

## Ճ Ի Ւ Ղ Ե Ր

ԼԱԳՈԴԱՂ. Կ. Հ. Բ. Ընկերութեան աւանիս ճիւղի վարչութիւնը աչքի առաջ ունենալով այն հանգամանքը, որ տեղւոյս հայոց դպրոցը, ճիւղի գրասենեակը եւ գրադարան-ընթերցարանը գտնւում են մի այնպիսի խարխուլ ու փթած շէնքի մէջ, որ միշտ վտանգ է սպառնում եւ այդ բանը վարչութեանը մեծ մտահոգութիւն է պատճառում, որովհետեւ ճիւղի բարգաւաճմանը խանգարում է կանոնաւոր ու յարմար շէնք չունենալը։ Այսօր սրտիս անհուն բերկրանքով հաղորդում եմ, որ վերջերս պ. Յովհաննէս Յարութիւնեանի տանը ճաշկերոյթի ժամանակ, հիւրերի մէջ միտք ծագեց գլուխ բերել նոր շէնք ունենալը. վերոյիշեալ նպատակի համար եւ իսկոյն հանգանակութիւն բացուեց սեղանի վրայ եւ հաւաքուեցաւ մօտ 5000 ռուբլի, իսկ ծրագրուած շէնքը ունենալու համար հարկաւոր է 10,000 ռուբլի. հանգանակութիւնը շարունակուելու է։

---



## Գ. ԱՆԻՒՐԻՆ ՈՒԻԼԸՄՍ

**Նախագահ Լոնդոնի Լորդ-Քաղաքագլխի հայկական ֆոնդի գործադիր Մարմնի**

Այդ հայանպաստ Մարմինը, որի գործադիր Մարմնի նախագահի պատկերն ենք տալիս այսօր, կազմուեց Լոնդոնում անցեալ հոկտեմբերի 15-ին Լոնդոնի քաղաքապետարանում՝ Լորդ քաղաքագլխի, մեծահռչակ Լորդ Բրայսի եւ պ. Ուիլըմսի նախաձեռնութեամբ *)։

Գ. Անիւրին Ուիլըմս, պատգամաւոր Անգլ. պարլամենտում, ծնուել է հարաւային Կալլէսի կամ Ուէլսի (Բրիտանիա) Գլամորկընշայր կոմսութեան Դոլէս քաղաքում 1859-ին։ Նա ծագում է Կալլէսի այն ազատասէր ցեղից, որ դարերով մարտնչել է իր ազգային

*) Այս ֆոնդի կազմութեան մասին ընդարձակ յիշատակուած է «Համբաւաբեր» ի նախընթաց համարներից մէկում։ Խմբ.

ուցեղային ինքնուրոյնութեան համար։ Ուէլսցիները երկար կռուել են կեսարի լեգէոնների, դանիացոց և անգլիացիների դէմ, իսկ ԺԶ. դար. անգլիական եկեղեցու հիմնադրութիւնից ի վեր նախանձախնդրութեամբ պահել են կրօնական անկախութիւնը և մինչև այսօր զօրաւոր պաշտպաններ են «Նոն-կոնֆորմիստ խղճի և դաւանութեան» ազատութեանն։

Ուէլսցիները փոքր ազգութեանց ազատութեան համակիր են եղել։

Ահա այսպիսի ծագում ունի պ. Ուիլըմսը. Լոնդոնի համալսարանում պատրաստուելուց յետոյ անցել է Քեմբրիճի համալսարան և ստացել կլասիկ Tripos-ի վկայական։

Նա 1884-ին հրաւիրուեց փաստաբանների կաճառից լինելու փաստաբան, բայց չընդունեց այդ, հասարակական գործունէութեան նուիրուելու համար։

Եւրոպայում, Եգիպտոսում և Ամերիկայում ուղևորութիւններ կատարելուց յետոյ՝ նորից հետևել է քաղաքատնտեսական գիտութեան ընթացքին և ալել է դասախօսութիւններ Լոնդոնի յայտնի Toynlee Hall-ում։ Իսկ իր հօր մահից յետոյ նա պարտաւորուեցաւ յանձն առնել սորա երկաթագործարանների ղեկավարութիւնը։ Նա հետաքրքրուել է բանուորական դասերի բարեկեցութեան և աշխատանքի դրամագլխի համագործակցութեան հարցերով։ 1912-ին նա գրեց Co—partnership and Profil-sharing բանուորական մեծ հարցին նուիրուած գիրքը։

Համոզումով արմատական-ազատական է, գործօն մասնակցութիւն է ունեցել մարդկութեան յառաջադիմութեան խնդրին նուիրուած գործերին։ Առաջին անգամ պարլամենտի անդամ ընտրուեց 1910։ Իսկ երկրորդ անգամ 1914-ին համաշխարհային պատերազմից առաջ։ Նոյն տարուայ մայիսին նա պարլամենտում խօսեց մի շատ զօրաւոր ճառ ի նպաստ հայկական բարենորոգումներին՝ շեշտելով Անգլիոյ պատասխանատուութիւնը հայոց կրած տառապանքների վերաբերմամբ. մի մեծ ճառ էլ արտասանեց նոյեմբերի 16-ին կոտորածների առթիւ։ Յանձին պ. Ուիլըմսին նահատակուած Հայաստանը ունի մի շատ լուրջ և համոզուած բարեկամ, մի մարդ, որ երկար հետաքրքրուել է Հայաստանի դիրքի գեղեցկութեանց, հայերի ընդունակութեան և դրութեան մասին։ Այժմ էլ նա ընտրել է ամենագործնական ճանապարհը. ըստ հնարաւորութեան ուղարկել առատ նպաստի գումարներ՝ ի նպաստ տաճկահայ փախստականների՝ փրկելու հայի կեանքը և տեղաւորելու հայրենիքում։ Փառք ու պատիւ հայասէր Ուիլըմսին։

## Քրոնիկոն

Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսի կարգադրութեամբ էրզրում է գնալու մէկ բարձրաստիճան հոգևորական երեք աշխարհականի հետ՝ հովանաւորելու և կոտորածից ազատուած հայերի օգնութեան գործը կազմակերպելու համար, և տէրութիւն անելու եկեղեցական և ազգային կալուածքներին և կայքերին։

* * *

Այսօր, ժամը 10-ից մինչև ժամի 6-ը կատարուելու է քաղաքային դումայի իրաւասուների ընտրութիւնը 1, 2 և 3 ընտրողական քաղաքամասերում։ Ընտրողական պայքարը շատ ուժեղ է լինելու երկրորդ քաղաքամասում, ուր սուր մրցումն է լինում երկու խմբերի միջև. մէկը անուանւում է միացեալ խումբ ղեկավարութեամբ բժ. Մ. Աֆթանդիլեանի, իսկ միւսը՝ «առաջադիմական» Տուրքովիչի ղեկավարութեամբ։ Այս մասի իրաւասուների ընտրութիւնը կատարուելու է քաղաքային դումայի դահլիճում։ Ամեն մի ընտրող իրաւունք ունի, երբ ցանկանայ, ստանալ տոմսակ և մասնակցել ընտրութեան։

* * *

Պետրոգրադից մեզ հաղորդում են, որ ճիշտ չէ վերջերս տարածուած լուրը, թէ նախկին Փոխարքայ Վորոնցով-Դաշկովը կտակել է Թիֆլիս քաղաքին երկու միլիոն ռուբլի։

* * *

Ապրիլի վերջը Պետրոգրադում ներքին գործոց նախարարի թոյլտուութեամբ կը կայանայ փախստականներին նպաստող հայկական կազմակերպութիւնների ներկայացուցիչների համագումար։ Այդ առթիւ ընկերութիւնները պատրաստում են զեկուցումներ։

* * *

Թիֆլիսի քաղաքային վարչութիւնը մտադիր է մօտ ապագայում հիմնել մեխանիքական հաց թխելու փուռը ինժեներ Լուրէի նախագծով։ Ամեն մի փուռը նստում է 70,000 ռ. և միանգամից թխում է 1000 պ. հաց։

* * *

Հայ Գրողների Ընկերութեան Վարչութիւնը Թիֆլիսի ժողովարանի աւագների խորհրդից ստացել է թոյլտուութիւն՝ կազմել ժողովարանում պարբերաբար դասախօսութիւններ և գրական երեկոյթներ։ Առաջին երեկոյթը լինելու է այս ամսի վերջը և նուիրած է լինելու Միք. Նալբանդեանին։

* * *

Մեզ հաղորդում են, որ ուսուցչապետ պ. Վ. Տոտոմեանցը Թիֆլիսի ժողովարանի հրաւէրով գալու է մեծ պասի վերջին շաբաթ Թիֆլիս և դասախօսելու է ժողովարանում։ Դասախօսութեան նիւթըն է՝ Եւրոպան պատերազմից յետոյ տնտեսական և սոցիալական տեսակէտից։

* * *

Թիֆլիսի Վաճառականական բանկում ապրիլին կատարուելու է դիրեկտորի ընտրութիւն հանգուցեալ դիրեկտոր ծով. Թուղաղեանի տեղը։ Այդ պաշտօնի համար առայժմ երկու թեկնածու կայ՝ պ. Պօղոս Դոլուխանեան (իրաւաբան) և Մենտոր Բունիաթեան, որը բարձրագոյն կրթութիւն ստացել է արտասահման։

* * *

Բագու կատարուած անկարգութիւններից վնաս է եղել 1.500,000 ռ., կողոպտուել է 118 խանութ։

* * *

Փախստականների գործերի գլխաւոր լիազօրը, ստանալով պետական գանձարանից 900,000 ռ. պահեստներ և խանութներ բանալու համար, այդ գործը յանձնում է Կ. Հ. Բ. Ընկերութեան և նրա կից Հ. Կ. Կոմիտէին, իսկ վերջիններս մասնակցելու հրաւիրելու են և միւս ազգային կազմակերպութիւններին, որոնք զբաղւում են փախստականների օգնութեան գործով։

* * *

Վրիպակ. «Համբաւաբեր»-ի № 10-ում պէտք է լինի Կ. Հ. Բ. Ընկերութեան ժողովի նախագահ ընտրուեց Ա. Ատովեան, իսկ վարչութեանը՝ Հ. Մինասեան։

## Արտաքին տեսութիւն

### ԳԵՐՄԱՆԻԱ

Վերջին ժամանակներս լրագրները շատ են խօսում այն տնտեսական տագնապի մասին, որի մէջ ընկել է Գերմանիան ներկայ երկարատև պատերազմի հետևանքով։ Խօսում են ալրուտի յարաճուն թանգութեան, կենսական պիտոյքների սպառումը պետական հսկողութեան տակ դնելու, թանգութեան դէմ առաջացած ժողովրդական ցոյցերի մասին և այլն և այլն։ Այս լուրերը, որ ամեն օր երևում են լրագրական էջերում, կասկած չեն թողնում, որ Գերմանիան տնտեսական ծանր կացութեան մէջ է գտնւում։

միտները սուզանաւային անվերապահ կռիւ պահանջող բանաձևեր են հանում։ Կենտրոնը յոյս է յայտնում, որ Ֆոն Տիրպիցը նորից կանչուի իր պաշտօնին և միայն ազատականներն ու ընկերվարականներն են գոհունակութեամբ ընդունում կայսեր որոշումը։

Ներկայումս ներքին պայքարն այս հողի վրայ դեռ շարունակւում է Գերմանիայում։ Հակառակորդ կողմերն այնպէս են յարձակւում իրար դէմ, որ Bürgerfrieden-ի առաջին օրերին երեւակայել իսկ չէր կարելի։ Կառավարութիւնը աշխատում է հանդստացնել պանգերմանիստներին հաւատացնելով, թէ գերմանական սուզանաւերը առաջիկայում ևս պէտք է գործեն և թէ Ֆոն Տիրպիցի հրաժարականը մի առանձին փոփոխութիւն չի մտցնում պետական կեանքի մէջ։ Սակայն այս հաւաստիացումները հազիւ թէ իրենց նպատակին հասնեն։ Ով ծանօթ է պանգերմանիստներին, չի կարող չ'ընդունել, որ նրանք պէտք է իրենց կռիւը շարունակեն մինչև Բեթման ֆոն Հոլլուէգը տապալուի։

Այսպէս թէ այնպէս Գերմանիայի ներքին-քաղաքական կեանքում մի ճեղք է բացուած, որ լցնելը այնքան դժուարին պէտք է լինի, որքան և նրա տնտեսական ու ռազմական կեանքում բացուած ճեղքերը,

Ա. Ջամալեան

# ՏԱՃԿԱՀԱՅԵՐ

## ԲՈՒԼԱՆԸԽԻ ԿՈՏՈՐԱԾԸ *)

II

Դրութիւնը այսպէս կը շարունակուէր, երբ վրայ կուգար Սարիղամիշի պարտութիւնը, ինչպէս և Ալաշկերտի գծէն քրդական գնդերու վերստին փախուստը։ Միևնոյն ատեն տեղի կունենար Ալաշկերտի իսլամ բնակչութեան փախուստը դէպի Մանազկերտ-Բուլանըխ։ Մանազկերտը վտանգի տակ կարծելով ամբողջովին տեղաւորուեցան Բուլանըխ և թշուառ հայ գիւղացուն պարտաւորեցուցին խնամել և մնուցանել թէ մարդը և թէ անասունները։

Վերոյիշեալ պարտութենէն յետոյ մանաւանդ, սկսաւ զինուորական դասալքութիւնը, փախուստը. կը փախչէր թիւրքը, քիւրդը, կը փախչէր և հայ զինուորը։ Այս դասալիք զինուորները հաւաքելու և վերստին բանակները ղրկելու համար, ինչեր արդեօք կատարուեցան, չենք կարող այս սուղ էջերով ներկայացնել։ Ծեծն ու բանտարկութիւնը, մանաւանդ զինուորագրութեան պաշտօնեային (ռէղիֆի իւզբաշին) կաշառակերութիւնը սովորական չափերու հասան։

Այս պաշտօնեային նման և ոստիկանապետ մշեցի Շիւքրին և Բէօլիւքպէմենի կամ Բաշ-չաւուշ Մեհմէդը ծայրագոյն աստիճանները հասցուցին իրենց լրբութիւնները։ Առաջինն որքան երկերեսանի, նենգաւոր և հայատեաց, երկրորդը՝ արիւնարբու, բարբարոս, հայհոյող, պիղծբերան և հայու արեան ծարաւի։ Ասոնք հայերու ծուծը ծծեցին և ահագին հարստութեան տէր դարձան։

Անցաւ ձմեռն ու եկաւ գարունը. գարուն մը՝ որ սև ու սուգ պիտի բերէր թիւրքահայուն։ Ապրիլին տեղի ունեցած էր Արճէշի շրջանի կոտորածը, որ ծայր տուաւ մինչև Բաղեշ, 50—60 հայ զինուորցուներ գիւղէն դուրս տարուած ու հրացանազարկ եղած էին։ Անոնցմէ բիթլիսցի գեղադէմ պատանի մը իսլամցնելու համար թիւրք զինուորները մինչև Կոփ բերին։ Եւ որովհետև այդ ժամանակ (ապրիլի վերջերը) Կոփի կառավարութիւնն ու իսլամ տարրը փախուստ տուած էր, հայ երիտասարդները յաջողեցան կորզել յիշեալ պատանին զօրքերու ձեռքէն։ Այդ օրերուն՝ թուրք սպայ մը Մանազկերտի Դուկնուկ գիւղէն 14 զինուորցու հայ երիտասարդներ բերած էր Խըլճոու գիւղը և Արածանիի ափերուն մօտ հրացանի բռնած էր։ Անոնցմէ 8—9 հոգի ինքզինքնին գետը ձգելով ազատուած էին։ Մանազկերտն ևս կոտորածը սկսելու վրայ էր, բայց տեղւոյն գայմագամը արգելեց. և երբ ռուսական բանակը վերջապէս Խլիճ գետակի բարձունքներէն իջնելով առաջացաւ դէպի Մանազկերտ, սիւնկցի քիւրդ ցեղապետ յայտնի Արգիւլ Մէջիտը իր աշիրէթով փախստեան դիմեց. բայց նախ քան փախուստը Անթապի արդէն ցանցառ հայութենէն սրախողխող ըրած էր 150 հոգի։ Հետապնդուելով ռուս յառաջապահներէն Մանազկերտի (բերդի) առաջ թողեց ահագին թուով ոչխար, տաւար, տնական ապրանքներով բեռցուած սայլեր և այլն ու հազիւ ճողոպրեցաւ և շունչ առաւ Ախլաթ, ուր միանալով հայատեացի Բէօռ Հիւսէյն փաշային և ուրիշ քիւրդերուն՝ սրէ անցուցին ամբողջ գաւառը։

Բարեբախտաբար Արածանին՝ գարնան պատճառով յորդած էր և անանցանելի պատուար մը դարձած Բուլանըխի և Մանազկերտի միջև, ապա թէ ոչ ազատուած այն բուռ մը բուլանըխցիներն ևս Ախլաթի բախտին պիտի արժանանային։ Բուլանըխ իր կեանքը պարտ է Արածանիին։

Ապրիլի 27-ին երբ ռուս բանակը մտաւ Մանազկերտ-բերդը, Կոփի կառավարական ամբողջ կազմը թիւրք և քիւրդ բնակչութեան և առևտրական դասակարգի հետ անցաւ Ներքին Բուլանըխ։ Այդ հապճեպ մեկնելու միջոցին գրաւեցին կոփեցիներու սայլերը, լծան անասունները և նոյն իսկ բազմաթիւ երիտասարդներ՝ իբր ծառայ, և կառավարական արխիւը ու իրենց տնական անհրաժեշտ իրեղէններ բեռցած՝ փախուստ տուին։ Տուն, խանութ են մնացին անտէրունչ. շատերը նոյն իսկ իրենց տներու բանալիները յանձնեցին հայերուն։ Յաջորդ առաւօտ Կոփ մաքրուած էր թիւրքերէ. մնացին 5—10 հոգի մը։ Ապրիլի 29-ի իրիկուն գայմագամ Ասատ բէյն Լիզի միւդիր Խալաֆ էնֆէնդիի և 14 ոստիկաններու հետ միասին եկաւ Կոփ։ Հայերն սկսեցին բաւական վախնալ, որովհետև յաջորդ առաւօտ Կոփի շրջակայ բարձունքներու վրայ տեսնուած էին 60—70 ձիաւոր քրդական չէթաներ։ Ասատ բէյն Բուլանըխի ի տ ա ր է ի անդամ (վարչական ժողովի հայ անդամները) եռնջալուեցի Բարսեղն ու մէջնալուեցի Մխիթարը կը ղրկէր դէպի Մանազկերտի սահմանները տեղեկութիւն բերելու, թէ ո՞ւր կը գտնուէր թշնամին. միևնոյն ժամանակ՝ 1—2 անգամ փամփուշտ կեդրոնէն Լիզ փոխադրելու հրամաններ կընէր և երբ մարդ կամ անասուն ուշ ճարուելու համար սախտուած էր դեռ քիչ մ'ալ սպասել ձիու վրայ հեծած, երբ Կոփի հիւսիս-արևելեան կողմէն Բլրիկ կոչուած բլուրին վրայ երևացին 7—8 ռուս կոզակներ և սկսեցին կրակել։ Գայմագամը, միւդիրը և ոստիկանները շուտով դիրք բռնեցին թիւրքաց գերեզմանատան վերև և պատասխանեցին հրացանաձգութեամբ։ Իսկ ժողովուրդը, մանաւանդ երեխաներն ու երիտասարդները յորձանք տուին դէպէ յիշեալ Բլրիկը, որ Կոփէն 15 քայլ հազիւ հեռաւորութիւն ունէր և անխոհեմաբար կրակ բացին ճանապարհին։ Կոզակները վայրկենաբար աներևոյթացան, իսկ գայմագամն իւրայիններով սկսան գնդակներ տեղալ քաղաքին վրայ։ Պաշտպանութեան համար զինուած խումբ մը երիտասարդներ կարծելով որ գայմագամը ժողովուրդը կը զարկէ, սկսան հրացաններ արձակել և գիւղի միջէն հրացանաձգութեամբ սկսան բարձրանալ դէպի անոր՝ նախապէս բռնած դիրքերը. վերջապէս գայմագամ, միւդիր և ոստիկանները նահանջեցին դէպի Լիզ—Ներքին Բուլանըխ։ Ամբոխը անմիջապէս խուժեց թ է ք ա լ ի ֆ ի հ ա ր պ ի յ է ի ամբարը և վայրկենապէս ցրիւ տուաւ շաքարը, իւղը, մեղրը ևն։ Այլևս ամեն հաշիւ վերջացած համարուեցաւ. պէտք էր փախուստի վրայ խորհել։ Յանկարծ լուր տարածուեցաւ թէ Հաջի Մուսա բէյը մեծ բազմութեամբ շուտով յարձակում պիտի գործէ Կոփի վրայ։ Անմիջապէս սկսաւ անկարգ փախուստը, ձգելով ամեն բան տեղն ու տեղը։

Կայծակի արագութեամբ լուր տարածուեցաւ շրջակայ գիւղերը և սկսան փախչել մէկ մէկու ետևէն Թեղուտ, Ոտնչոր, Եօն-

*) Տես «Համբաւաբեր» № 12։

դժնդակ կացութեան հանդէպ։ Արշինաչափ խորունկ փոս մը և այնուհետև անյայտացած էր նա սիրելիներու համար։

Այսպիսի դժնդակ ու տագնապալի օրերուն ինքնապաշտպանութեան զգացումը այն աստիճան կը լարուի մարդ էակի մօտ, որ իր եսէն դուրս բան չի ճանչնար։ Ասկէ է առաջացեր կը կարծեմ «մէր գմանուկ կ'ուրանայ» ասացուածը, որուն ականատես եղանք։ Սեպհականութեան-իրաւունքի գաղափարն ալ կ'անհետի մարդուն մէջ։ Տեսանք թէ ինչպէս ընկեր ընկերին, դրացին դրացուն ունեցածը կը ջանար յափշտակել կամ իւրացնել...

Վերջապէս կը հասնենք Ալաշկերտ. այս անգամ կը դառնանք դէպի արևելք. կը կորենք կ'անցնինք Բագրևանդի երկայնքը, կը տեսնենք Նպատը, Ջերուդաշտը, Եղջերեայ լերինքը, Կոգովիտը, Դարոյնք-Բայազետը և վերջապես մեծափառ Մասիսը։ Մի զարհվեր եա՛ և ահա ռուս-թրքական հին սահմանագլուխն ենք։ Կը դառնանք դէպի տարաբախտ հայրենիքը վերջին կարօտակէզ ակնարկ մը նետելու իր վրայ, որ կը շողար արեան լճերու մէջ, կը ծխար մարդկային դիակներու քամինելի խարոյկներով։ Կ'իջնենք Արարատեան դաշտը. ընկճուած ու պարտասած են թէ մարդիկ և թէ անասունները. և Մայր Աթոռի պատերու տակ հազարաւոր թշուառներու ցուրտ դիակները կը յանձնուէն հողին. ինչ որ պակաս էր թողուցեր թշնամու սուրը, լրացուցին համաճարակ ցաւն ու հիւանդութիւնները։

6 փետր. 1916 թ. Մեծ-Ղարաքիլիսա։ Սահակ Մովսէսեան

---

## ՀԱՅՈՑ ՀԱՐՑԻ ԱՆՑԵԱԼԻՑ

II

Այսպէս ուրեմն ժԹ դարու ազատ-փոխանակող և հակակայսերական Անգլիոյ յաջողութիւնը իր երկուութիւնն էր կազմում, որով նա յաջողապէս մարդասիրութիւնը միացնում էր վաճառականական գործերին։

Նա հաւատում էր միւս ցեղերի ազատութեան սկզբունքին, որովհետև այդ նշանակում էր նոր պատեհութիւններ գտնել իր առևտուրին համար, իսկ «փիլիսոփայական - իմաստասիրական արմատականներ» լորդ Շաֆթըսբըրիից և Ջօն-Ստիւարտ Միլլից սկսած մինչև Գլադստոն, այդ բարենորոգչական դպրոցի ղեկավարները իսրապէս հաւատում էին բոլոր մարդկային ցեղերի ֆիզիքական նոյնութեան և բոլոր մարդկային էակների հոգեկան հաւասարութեան։

Աւելի լայն խաւերի վաճառականական քաղաքականութեան վարիչները գուցէ չէին գիտակցում իրենց սկզբունքների երկուութիւնը, որովհետև այդ չէր արտայայտւում ճառերով կամ մամուլի էջերում։ Ինչպէս միշտ այդ ժամանակուան ճարտասանութիւնը (հռետորութիւնը) շեշտում էր վերացական (աբստրակտ) իրաւունքի և անշահախնդիր զգացմունքների վրայ, և ինչպէս միշտ, այն ժամանակ էլ խօսւում էր Եւրոպայի ընդհանրական օրէնքի, փոքր ազգութեանց իրաւունքների և միջազգային բարոյականութեան մասին։ Ոչ ոք սակայն դեռ չի կարողացել ոևէ կերպով կասկածի տակ ձգել Գլադստոնի պէս իդէալական ազատականների անշահախնդիր մաքրութիւնը, սակայն և այնպէս Մանչեստրեան դպրոցի տնտեսագիտական հայեացքներն էին, որ առիթ էին ընծայում այդ ղեկավարների քաղաքական յաջողութեան։

Գործնական մանրամասների մէջ կլանուած առևտրականներ գերազանց հաճոյք էին զգում, երբ նրանց ասում էին, որ իրենց անողնաշար մաքերը տարօրէն կերպով համապատասխանում էին մի վեհ այլասիրական քաղաքականութեան։ Այդ դպրոցը պատրաստ էր հաւատալու, որ հայերը և մակեդոնացիները իր տառապող եղբայրներն էին, որովհետև նա արդէն նրանց նկատում էր իբրև իր յաճախորդները։ Այդ կէս-բարոյագիտական, կէս-գործնական աշխարհայեացքով ղեկավարուող Անգլիան էր, որ 1830-ական թուականներին ջնջեց գերեվաճառութիւնը՝ Աֆրիկայում ներմուծեց քաղաքական և սոցիալական խորարմատ յեղափոխութիւն Եւրոպական իրաւակարգին մէջ իր սահմանադրական և բանուորական ուժեղ օրէնսդրութեամբ։

Նա էր որ հիւրընկալեց Քոշութին, Մացինիին և օտար բռնակալութեան դէմ մարտնչող բոլոր գործիչներին։ Նոյն դպրոցը զէնքով միջամտելու չափ առաջ չգնաց և Լուի Նապոլէոնի պէս չուղարկեց իր բանակը աւստրիացիներին արտաքսելու Լոմբարդիոյ և Պիէմոնդի հովիտներից և նուիրագործելու Իտալիոյ ազգային-քաղաքական միութիւնը, բայց անկասկած նա Ֆրանսիային տուեց գործելու ազատութիւն, համակրական աջակցութիւն և կամաւորներ։

Դիւրին է մակաբերել որ ոևէ գաղափարական խաչակրութիւն տեղ չէր կարող գտնել մի վաճառականական ազգի ծրագրին մէջ, բայց և այնպէս 1875-78 թուին Բալկաններից բարձրացող Քրիստոնեաների օրհասական ճիչերը խորապէս յուզեցին մինչև անգամ վաճառական ազգին.—դուրս եկան Գլադստոնը, Արգայլի դուքսը և ուրիշ հռետորներ, պատմագիր Ֆրիմըն, վիպասան Դրոլսբ և զօրաւոր կերպով արտայայտուեցին ի նպաստ նահատակուող բուլղար եղբայրների։

Խրիմի պատերազմից ի վեր Անգլիա վայելել էր տիեզերական վաճառականութեան մենավաճառը առանց Եւրոպական միւս ազգերի զօրաւոր մրցութեան. Նա լողում էր նիւթական հարստութեան և տնտեսական բարգաւաճման ովկիանին մէջ։ Հակառակ վերոյիշեալ մեծ մարդկանց անկեղծութեան և ազատական զանգուածների մէջ զգացուած խորունկ համակրութեան, բուլղարներին օգնութեան հասնելու կառավարիչ շրջանները զգուում էին արկածախնդրութիւններից և պատերազմաշունչ փորձերից, որ համարում էին ազգային ոյժերի վատնում։ Սակայն այստեղ էլ վարագոյրի ետևից գործում է մի ուժեղ բայց անտեսանելի ազդակ (ֆակտոր)։ Բալկաններում statu quo-ի ոևէ տակնուվրայութիւն, կամ սլաւոնական ոևէ յաջողութիւն առանց Անգլիայի միջամտութեան խախտելու էր քաղաքական «հաւասարակշռութիւնը» ի հաշիւ Թիւրքիայի, որի հողային ամբողջութեան պահպանման գարաւոր ֆիկցիան դեռ համարւում էր Անգլիական հիմնական շահերից մէկը։

Ուրեմն մարդկայնական-քրիստոնէական իդէալներով առաջնորդուող ազատականների զգայնապաշտութեանը (սանտիմենտալիզմ) և «ոյժերի հաւասարակշռութեան» դարաւոր քաղաքականութեան ախոյեանների՝ Դիզրայէլիի և Սոլզբըրիի իրապաշտութիւնը միացած՝ ձևակերպում էին վերածնող Բուլգարիայի ճակատագիրը, որի ազատագրման ռազմական բաժինը իր վրայ վերցրել և իր զաւակների արիւնը թափել էր Մեծն Ռուսաստանը։

Գուցէ նորագոյն ժամանակների պատմութեան մէջ 1848-78 տարիների շրջանը խանդավառութեան և ազգային իդէալների իրականացման մի եզական շրջան է՝ աշխարհագրական և պատմական պայմանների որոշ տարբերութիւններով։ Այդ շրջանը ծնունդ է տուել Իտալիոյ ազգային միութեան, գերմանական կայսրութեան հիմնաւորման և վերջապէս Բուլգարիոյ անկախութեան։ Իր գլխաւոր նպատակների և լայն գծերի մէջ վրիպել էր 1848-ի համեւրոպական յեղափոխական շարժումը։ Դժգոհ էին օտար լուծի տակ հեծեծող եւրոպական ազգութիւնները, որոնք ճիգեր էին թափում հաստատելու իրենց ազգային ինքնուրոյնութիւնը։ Քանի գոյութիւն ունէին տառապանքներ և պայքար՝ իդէալների և սկզբունքների համար, այնչափ էլ Եւրոպայում տիրում էր խանդավառութեան և այլասիրութեան շրջանը։

Սակայն Բուլգարիոյ ազատութիւնից, այն է՝ 1878-ից յետոյ, Եւրոպայի հոգեկան աշխարհը կրեց մի հիմնական փոփոխութիւն դէպի ազգայնական եսասիրութիւնը և իրական քաղաքականութիւնը (rèal politik)։

1879-ին Գերմանիան հաստատեց մաքսային պաշտպանողա-

*) Տես «Համբաւաբեր» № 11։

կան տարիֆ, որին շուտով հետևեցին Ֆրանսիան և Ռուսաստանը, ապա Աւստրիան և եւրոպական միւս փոքր երկիրները և վերջապէս Ամերիկան. հետևանքը շատ պարզ էր։ Մեծ ազգերը տարուած իրենց արդիւնաբերութեան և վաճառականութեան հոգսերով և ժամանակաւորապէս դեռ չգրաւած երկրամասեր և շուկաներ խլելու ձգտումով, սկսում էին մի խուլ և ահաւոր պայքար։ Խանդավառութեան շրջանից քաղաքակիրթ աշխարհը անցնում էր դէպի գործնականութեան և կայսերականութեան շրջանը, ուր անհետանում էին քաղաքական ազատականութեան հիմնական սկզբունքները։ Առանց ծանրանալու աշխարհայեացքի այս փոփոխութեան տնտեսական կողմերի* վրայ, եթէ նկատի առնենք 1879-ից և և առանձնապէս 1882-ից մինչև 1904 թուականը Եւրոպայի պատմութիւնը իբրև մի ամբողջութիւն, մենք որոշ կերպով այնտեղ կը տեսնենք մի տիրապետող գիծ—մի տիտանական պայքար կորզելու Աֆրիկայի բնակելի և արգասաւոր աշխարհամասերը, Ասիական և ովկիանական կղզիների յափշտակման դաւեր և մեքենայութիւններ և յետամնաց երկիրների և ցեղերի անլուր շահագործման փորձեր։ Մեծ պետութիւնները ընկել էին միմիայն իրենց ապրանքները նոր շուկաներ արտահանելու ետևից. նրանք որոնում էին բնական հարստութիւններ բովանդակող, բայց աղքատ երկիր շահագրելու տարուէ տարի երկրաչափական համեմատութեամբ աճող իրենց յաւելուածական դրամագլուխը (կապիտալ)։ Յիշելով Անգլիոյ օրինակը, պէտք է պարզապէս թուել 1882-1902 շրջանում նրա գրաւած հողամասերը.—Եգիպտոս, Նիգերիա, Բոնդոլանդ, Սոմալիլանդ, Բէչուանալանդ, բրիտանական Արեւելեան Աֆրիկա, Զուլուների երկիրը, Ռոդեսիա, Զանզիբար, Բրիտանական կենտրոնական Աֆրիկա, Ուգանդա, Աշանդի, Սուդան, Տրանսուալ և Օրանժ գետի գաղութը՝ Աֆրիկայում, բրիտանական նոր Գուինեա՝ Ամերիկայում, Վերին Բուրմա Սարավաք, Բահանգ՝ հնդկական Արշիպելագոսում, Վէյ-հայ-Վէյ և Բոլունգ՝ Չինաստանում, և այլն։ Այդ նշանակում է, որ այդ 20-ամեակի ընթացքում Անգլիան իր կայսրութիւնը աւելացրել է մօտ 4 միլիոն քառակուսի մղոն (մի մղոնը $1^1/_2$ վերստից աւելի է) տարածութեամբ երկիրներ և մօտ 70 միլիոն այլատարր ազգաբնակութիւն։ Միևնոյն ժամանակամիջոցում աւելի կամ պակաս չափով նոյնն արել են նաև Ռուսաստանը, Ֆրանսիան, Գերմանիան և այլն։

Այս իրողութիւնները յիշելով ինարկէ իմ նպատակն է ցոյց տալ, որ Հայոց հարցի սկզբնաւորութիւնը և զարգացումը դժբախտաբար զուգադիպել է եւրոպական այս սուր պայքարի սկզբնաւորութեան և զարգացման շրջանին, մի կլանող և գիտութեան բոլոր զէնքերով մղուող մրցութեան, որի ահաւորութեան առջև բնականաբար անշքացել են բոլոր մարդկայնական դատերը, միջազգային իրաւունքի և արդարութեան նուազագոյն պահանջները։ Այդ շրջանը ականատես է եղել ազատական գաղափարների տեղատուութեան՝ բովանդակ աշխարհում, մի ժամանակ, որում քաղաքական և կրօնական ազատութեան վաղեմի հասկացողութիւնները կորցրին իրենց կենսական ոյժը, որում քաղաքակիրթ երկիրների միջին դասերը սարսափած սոցիալական խուլ մռունչներից՝ դաւաճանում էին յառաջադիմութեան դատին և բաւականանում էին իրենց արդէն շահած իրաւունքներով և յաճախ էլ իրենց ազդեցութիւնը փոխադրում էին հաստատուած իրաւակարգի կողմը։ «Յարմարագոյնի յետապրումները» (survivence) և զօրաւորագոյնի իրաւունքի վարդապետութիւնը ընդունւում էր իբրև օրուայ սոցիալական իմաստասիրութեան խարիսխը։ Ազգերի կեանքին անհրաժեշտ իդէալականութիւնը ընկերային բարենորոգումների դարերից շեղւում էր դէպի կայսերականութեան գիշատիչ բնազդները։ «Սպիտակ մարդը», այն է՝ մեծ պետութիւններին պատկանող տրամադիր քաղաքացին իրան տալիս էր մի բեռ, մի պարտականութիւն, որ փայփայում էր իր սնապարծութիւնը—միլիոնաւոր յետամնաց, թոյլ և գունաւոր ցեղեր հպատակեցնել իր քաղաքատնտեսական կարգերին։ Բիսմարկ, Չէմբըրլէյն, Վիթթէ և Համոզ հանդիսանում էին այս նորագոյն կայսերականութեան դրօշակիրները՝ համաձայն իրենց պատկանող երկիրների տնտեսական և ելևմտական գերակշռութեան։ Բիսմարկի զինուորական քաղաքական և վաճառականական յաջողութիւնները տարերային թափով այդ սերնդի քաղաքական մտածողների մտքին վրայ դրոշմում էին պրուսական իդէալները։ Ամեն տեղ վայրագ ոյժն էր, որ նկատւում էր յաջողութեան գլխաւոր հիմքը։ Բրիտանիոյ պետութիւնները զինուած ամենաուժեղ միջոցներով ապիկարութեամբ ականատես էին լինում թիւրք կայսրութեան լուծին տակ հեծեծող իրեն կրօնակիցների խողխողման։

Նախընթաց սերունդին մեծ զոհողութիւնների գնով շահուած ազատութեան և ազգայնութեան յաղթանակները վերածւում էին փոշու և ոչնչութեան։ Իդէալականութեան Դասական հայրենիք Ֆրանսական հասարակապետութիւնը տապալւում էր կղերականների և զինուորական բազդախնդիրների ձեռքում։ Հակազդեցութիւնը (ռէաքսիոն) բացարձակապէս տիրում էր Եւրոպայի քաղաքական և տնտեսական հորիզոններին և այդ համատարած հովազդեցութեան տարրերը ոյժ էին հաւաքում գլխաւորապէս պետութիւնների տնտեսական մրցութեան և երկրասիրական հակամարտութեան շնորհիւ։

Միաժամանակ հսկայական չափերով աճում էր Անգլիոյ, Ֆրանսիայի, Ամերիկայի և Գերմանիոյ դրամագլուխը։ Իրենց ներքին շուկաներում էլ տեղ չէր մնացել շահաւոր ձեռնարկների. դրամագլխի տոկոսը մեծապէս ընկնում էր Եւրոպայում, մինչդեռ այդ յաւելուածական դրամագլուխը կարելի էր շատ նպաստաւոր պայմաններով շահագրել գաղութներում և անմշակ շուկաներում։

Անգլիական, ֆրանսական, գերմանական միլիոնները հոսում էին դէպի Աֆրիկա, Չինաստան, Հարաւային Ամերիկա և Թիւրքիա՝ «քաղաքակրթելու յետամնաց ցեղերը» և այդ բեղմնաւոր դաշտերը բանալու Արևմտեան վաճառականութեան և ֆինանսների առջև։ Զանազան ազգերի պատկանող մեծ դրամատէրեր (կապիտալիստ) շահագործելի շուկայի լաւագոյն ձեռարկները և մենաշնորհներ (կոնցեսիոններ) խլելու համար, իրար դէմ լարում էին կեղտոտ կռիւ։ Նրանց գլխաւոր նպատակներից մէկն էր ինարկէ շահագրուած դրամագլխից ստանալ բարձր և արագ դիւիդենդներ։

Այժմ մի վաճառականի և մի վաշխառու դրամատիրոջ միջև կայ մի հիմնական տարբերութիւն, այն է՝ մի ուղիղ վաճառական ամեն ճիգ թափում է որ իր յաճախորդը լինի բարեկեցիկ, ապրի ազատ և երջանիկ, աւելի շատ գնել սպառել կարենալու համար. մի տարրական ճշմարտութիւն, որ լաւ ըմբռնում էր ազատական Անգլիան և գլխաւորաբար այդ պատճառով էլ նա աջակցում էր ճնշուած ազգերի ազատութեան և խռովեալ երկիրների բարեկարգման, մինչդեռ մի վաշխառու դրամատէր երբէք էլ չի հոգայ իր յաճախորդի բարեկեցութեան մասին։ Գերմանացի դրամատէրը, Աբդիւլ Համիդի պալատականներին առատ կաշառքներ տալով, Թիւրքիայում ստանում էր մենաշնորհներ (կոնցեսիոններ) և ստեղծում էր շահագրութեան միջոցներ, բնականաբար երբէք էլ չէր հետաքրքրւում հայերի կամ մակեդոնացիների դրութեամբ, ընդհակառակն նրա համար ձեռնտու էր թիւրքական ֆինանսների քայքայուած վիճակը՝ պղտոր ջրերում լաւ ձուկ որսալու համար։

(Կը շարունակուի) Արշակ Սաֆրաստեան

## ՀԱՅԵՐՈՒ ՀԱԼԱԾԱՆՔՆԵՐԸ*)

### ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳԻՐ-ԹՐՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔ

III

Այս սոսկալի երեւոյթները աւելի յայտուն ցոյց տալու համար, պէտք է լսել ականատեսների պատմածները։ Ահաւասիկ նախ ամփոփումը փաստաթղթի մը, որը եկած է Հայաստանէն. այս հասարակ օրագրութիւն մըն է եղածներու, գրուած չոր, և գրեթէ վարչական ձևով։

«Մօտ մէկ միլիոն հայերը, որ կը բնակէին վեց նահանգներում, աքսորուեցան իրենց հայրենիքից դէպի հարաւ։ Այս տեղափոխութիւնները տեղի ունեցան տեղական վարչութիւններու ձեռքով շատ սիստեմատիկ, սկսած 1915 ապրիլ ամսու սկզբից։ Նախ բոլոր գիւղերու և քաղաքներու բնակչութիւնը բանտերէն եկած ոճրագործներու ու ժանդարմներու ձեռամբ զինընկեց եղաւ. այս առթիւ տեղի ունեցան սպանութիւններ և զարհուրելի տանջանքներ։ Անմիջապէս յետոյ սկսաւ հայերու մասսայական բանտարկութիւնները, փաստ բռնելով տներուն մէջ գտնուած զէնք, գիրք, ոևէ քաղաքական կուսակցութեան անուն. սրանցից ոևէ մէկը չըգտնելու պարագային կը բաւէր նրանց ունեցած հարստութիւնը կամ հասարակական դիրքը։ Եւ անմիջապէս վերջը, սկսան տեղահանութիւնը։ Նախ, աքսորելու պատրուակին տակ, անոնք, որոնք չէին բանտարկուած, կամ անոնք, որոնք ազատուած էին բանտէն ամբաստանաթղթեր չը գտնուելուն պատճառաւ. յետոյ սրանց ջարդեցին։ Ասոնցմէ մարդ չէ կարողացեր ազատուել մահուանէ։ Իրենց մեկնելէն առաջ, վարչութիւնը պաշտօնապէս կը խուզարկէ և կառնէ անոնց ունեցած դրամները և թանգարժէք իրերը։ Ասոնք ընդհանրապէս կապուած էին, կամ առանձին կամ հինգ, տասը հոգենոց խումբերով։ Մնացած ծերերը, կանայք և երեխաները ընդունուեցան որպէս աւար և դրուեցին թուրք խուժանի տրամադրութեան տակը. ամենաբարձր պաշտօնեայէն սկսած մինչև ամենահասարակ գիւղացին ընտրեցին գեղեցիկ կանայք ու աղջիկները և իրենց կնութեան առան, բռնի անոնց միւսլիման դարձնելով։ Դալով երեխաներուն՝ անոնցմէ վերցուցին որքան որ կուզէին. և մնացած մասը ճանապարհ ձգեցին անօթի և առանց ոևէ պաշարի, անօթութեան զոհ դառնալու համար. եթէ անոնք ազատուէին աւազակներու չարագործութիւններէն։ Եղելութիւնները այսպէս անցան Խարբերդի մէջ։ Ջարդեր տեղի ունեցան Տիգրանակերտի նահանգի և մասնաւորապէս Մերտինի մէջ։

«Կարինի, Բաղէշի, Սեբաստիայի և Տիգրանակերտի մէջ տեղական վարչութիւններն տուին տեղահանուածներուն դիւրութիւններ, հինգէն տասը օր ժամանակ և իրաւասութիւն իրենց ունեցած գոյքերու մէկ մասը ծախելու և սայլեր կարողանալ վարձելու համար, բայց մի քանի օր վերջ սայլապանները կէս ճանապարհին թողելով վերադառնում էին քաղաք։ Այսպէս կազմուած տեղահանուածներու կարաւանները կամ յաջորդ օրը և կամ մի քանի օր վերջ կը պատահէին աւազակներու և կամ զինուած թուրք գիւղացիներու խումբերու, որոնցմէ կը թալանուէին ամբողջովին։ Աւազակները միանալով ժանդարմներուն կսպանէին հասուկենտ մնացած տղամարդկանց, որ կը գտնուէին այդ դժբաղդ կարաւաններուն մէջ։ Կը վերցնէին կանանց, երիտասարդ աղջիկներուն և երեխաներուն, թողնելով միմիայն պառաւ կանանց, որոնք ժանդարմներու մտրակի տակ առաջ կը քշուէին, մինչև որ ճանապարհին ոևէ մի տեղ անօթութենէ և տանջանքներէն մեռնէին։ Ականատես մը կը պատմէ, որ Կարինից գաղթեցուած կանայք ձգուած էին Խարբերդի դաշտը, ուր բոլորը մեռան անօթութենէ (40—50 օրական), և թուրք կառավարութիւնը միայն ուղարկեց մի քանի մարդիկ դժբախտներուն թաղելու համար, այդ ալ նրա համար, որպէսզի թուրք բնակչութեան առողջութիւն չը վտանգուի։ Մի փոքր աղջիկ պատմում է, որ Թոքաթի, Ամասիայի և Մարզուանի բնակչութիւնը, երբ հասաւ Սարի-Բշլա (Սեբաստիոյ և Կեսարիոյ մէջ տեղը) կառավարութեան ներկայութեան մինչ իսկ անջատեցին երկու սեռի պատանող երեխաները իրենց մայրերէն, փակեցին սրահներու մէջ և ստիպեցին կարաւանին շարունակելու իրենց ճանապարհը։ Անմիջապէս վերջը տեղեկացուցին մօտիկը գտնուող գիւղերուն, որ ամեն մէկը կարող է առնել ըստ իր ընտրութեան. ինքը և իրա ընկերուհին վերցուած և բերուած են թուրք զինուորականի մը կողմէ։ Կանանց և երեխաներու կարաւանները կը ցուցադրէին ամեն մի կառավարական շէնքի առաջ, ուր որ գնային, որպէսզի միւսլիման բնակչութիւնը ըստ իր ընտրութեան վերցնէր։ Բաբերդէն մեկնող կարաւանը, այսպէս պակսելով կանանցից և երեխաներից, մնացեալը նետուեց Եփրատ գետը, Երզնկայի առջև։

Այս բարբարոսութիւնները գործադրուած են ամենուրեք, և ճանապարհորդները, այս նահանգներու ճանապարհներու վրայ հանդիպած են հազարաւոր հայերու դիակներու։ Մի մահմեդական ճամբորդ, Մալաթիայէն Սուազ ճանապարհին, որ կը տևէ հինգ օր, շարունակ հանդիպած է մարդկանց և կանանց դիակներու։ Մալաթիայի բոլոր արուները բերուած էին այդտեղ և սպանուած, կանայք և երեխաները բռնի իսլամացուած էին։ Զոհրաբը և Վարդգէսը, օսմանեան պառլամենտի հայ անդամները, որոնք Տիգրանակերտ կը ղրկուէին պատերազմական ատեանի կողմէ դատուելու համար, տեղ հասնելէ առաջ Հալէպի մօտ սպանուեցան։

«Հայ զինուորները նոյն բախտին արժանացան։ Նախ բոլորը զինընկեց եղան և աշխատում էին ճանապարհներ շինելու համար։ Մենք լաւ տեղից իմանում ենք, որ Կարինի հայ զինուորները, որ աշխատում էին Կարին-Երզնկա ճանապարհին վրայ, բոլորն էլ կոտորուած են։ Միմիայն Խարբերդէն 1800 երիտասարդ հայեր ղրկուեցան որպէս զինուոր Տիգրանակերտ, այնտեղ աշխատելու համար, և այդ բոլորը կոտորուեցին Արղընի-Մադէնի մօտ։ Ուրիշ տեղի զինուորներէն ոչ մի լուր չկայ, բայց անպայման նրանք էլ սրանց բաղդը ունեցան»։

(Կը շարունակուի) Տրդատ

*) Տես «Համբաւաբեր» № 11։

# Գեղարուեստ

## ՇԱՀԶԻՆԵԱՆԻ ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆԸ

*(Հազար ու մի գիշերների նմանողութեամբ)*

Եւ իմաստուն Շահրազադէն բաց արաւ իր հուր աչքերը, շարժեց աղեղնաձև յօնքերը, նռանման շրթունքը արքային ուղղեց և իր մեղուշ ձայնով ասաց.

—«Բարձր և հպարտ են Հիմալայեան լեռները։ Էւերեստը ամպրոպների հետ է մարտնչում։ Բայց նրանցից էլ սէգ, նրանցից էլ անհարկուն Շահզինեան թագաւորն էր, նա, որ հրամայում էր Գանգէսին ու Ինդոսին։

Լայնալանջ Հնդկաստանը խոնարհւում էր նրա առաջ, և ամբողջ Արևելքն իր բարիքները նրա արքունիքն էր ուղղում։ Իրանն ուղարկում էր լազուր փիրուզ, Արաբիան՝ մարգարիտ ու նժոյգներ, Հայաստանը՝ որդն-կարմիր, Փենջաբը՝ մեղր, Տիբեթը՝ մուշկ, Փիւնիկէն՝ արմաւ ու ծիրանի... Զոնդեան կղզիներից հալուէ ու քափուր էր ստանում նա, Աֆրիկայից՝ փղոսկր, մեխակ ու դարչին, Չինաստանից՝ թէյ ու ապակի, Դամասկոսից՝ զէնքեր, Բաղդադից՝ կերպասներ, Սիրիայից՝ կիտրոն, թուզ ու հոտաւէտ գինի, Եմենից՝ ղահվէ։

Եւ ապրում էր Շահզինեանը ճոխ ու շռայլ, գոհ աշխարհից ու աստուածներից և չըգիտէր, թէ ինչ բան է վիշտը։ Սակայն վե

արքան Հնդկաստանի երջանիկ էր ոչ թէ արևի այս ամբաւ գանձերով և գոհարեղէնների պահեստներով, այլ իր նազանի տիկնոջ՝ Սաֆիէ թագուհու սիրով։

Դիւցազնի սիրտն է կինը, գիտունի՝ միտքը, բանաստեղծի քնարն է կինը, արքայի՝ թագը։ Այսպէս էր կարծում Շահզինան թագաւորը։ Եւ իրօք, Սաֆիէն մի արև էր, որ ծագել էր արքայական ապարանքում, մի պայծառ Սիրիուս՝ Հնդկաստանի հորիզոնի վրայ։ Թագաւորի թագի արեգակնափայլ ադամանդն էր նա։

Եւ խմում էր Շահզինանը նռան կարմիր գինին ոգելից, և նայում էր Շահզինանը Սաֆիէի սև աչքերին կախարդիչ, և հարբում էր սիրով ու գինով։ Բախտաւոր էր հնդիկների արքան, երջանիկ՝ Սաֆիէ թագուհու սիրազեղ համբոյրներով։ Նրա մազերը չէին ճերմակում, որովհետև տանջող կարօտը չէր համբուրել նրա հոգին։

Սակայն քամիները տարբեր ալքիւրներից են բղխում, և հով ու զով լեռներից, և մեղմ ու անուշ ծովերից, և տօթաբեր ու այրող անապատներից։ Լուր եկաւ հեռաւոր Թաթարստանից, թէ Սամարղանդի ահաւոր շահը, իր զօրքերն առած, դէպի Հնդկաստան է արշաւում, որովհետև Շահզինանի փառքն ու համբաւը նրան հանգստութիւն չեն տալիս։

Ցասումը պատեց հնդիկների արքային։ Կանչեց նա մեծ վեզիրին, հրամայեց հաւաքել զօրքերը և պատրաստ լինել՝ վաղը և եթ ճանապարհ ընկնելու դէպի Թաթարստան։ Անհրաժեշտ էր պատժել յանդուգն շահին և ջախջախել նրա զօրքը իր իսկ սեպհական հողում, Հնդկաստանի սահմաններից հեռու։

Հետևեալ օրը անթիւ և անհամար գնդեր դուրս եկան արքայական Ոստանից, բոլորն էլ խրոխտ ու զինավառ։ Փոշին ծածկել էր արևի երեսը, իսկ ձիերի գոփիւնից, կառքերի ճռնչոցից խլացել էին թէ մարդիկ, թէ կենդանիները։ Ամենից վերջը գնում էր ինքը թագաւորը՝ շրջապատուած հազարաւոր դրանիկներով ու իշխանազուններով, որոնք նստած էին ամբողջ երիվարների վրայ։

Շանթեր էին ցայտում Շահզինանի սլխուկ նժոյգի աչքերից։ Նրա բաշը փրփրուն էր, սապանդակները՝ ոսկի, և սանձը մարգարտաշար։ Սակայն տխուր էր հեծեալը։ Նրա արքայական հոյակապ դէմքին մի վշտոտ փայլ կար։ Դժուարին է սիրելիից անջատուելու ժամը։ Առաջին անգամ էին կարօտի մեղմ շողերը ներս սողում նրա կուրծքը։

Դեռ հասարակածի բարկ արևը նոր էր իր գլուխը թաղել Պարսից ծովում, երբ հնդկաց բանակը կանգ առաւ հանգստանալու։ Թագաւորի վրանը վեհօրէն բարձրեց ծաղկաւէտ բլուրի լանջին։ Նրա վրայ ծածանում էր ոսկեծաղարդ դրօշը։ Պառկած էր Շահզինանը վրանում, սակայն անհանգիստ է նրա քունը, տխուր մտքեր պաշարել էին նրան, սիրտը լցւում էր կարօտի յոյզերով։ Սաֆիէ թագուհու մասին էր մտածում...։

Թռչնած հոգով երազ տեսաւ նա։ Զբօսնում էր արքունի բուրաստանում, Սաֆիէի հետ։ Այդ դրախտային պարտեզում նրանք յաճախ էին վարդերի անմահական բուրմունքով գինովցած՝ սէր վայելել։ Ցանկարծ թագուհին մի դրախտահաւ դարձաւ, թռաւ և թառ եկաւ երկնասլաց չինարու ճիւղին։ Արքան ապշած նայում էր դրախտահաւքին, որ, իր գեղանի ադին բաց արած, ուզում էր զարմացնել նրան իր փետուրների նրբութեամբ։ Մէկ էլ դրախտահաւը մի վայրկեանում ագռաւ դարձաւ, մի սև ու անաղին ագռաւ, ցած իջաւ, իր սուր ճանկերով բռնեց թագաւորին և վերև քաշեց նրան։ Արևն իսկոյն խաւարեց...

Սարսափահար վեր թռաւ Շահզինանը, իր մօտ կանչեց վեզիրին ու ասաց.

— Եփր իմ նժոյգը, դու էլ քոնը նստիր։ Պիտի երկուսով իսկոյն վերադառնանք տուն և դեռ արևը չբծագած կրկին այստեղ լինենք։ Բանակում ոչ ոք չպիտի իմանայ այս մասին. մենք ծպտեալ ենք գնում։

Ծառան առանց յապաղելու կատարեց տիրոջ հրամանը։ Դեռ արուսեակի շողերը չէին մխուել երկնքի կուրծքը, որ նրանք հասան ապարանք։ Մտան պարտէզը՝ իրենց ծանօթ գաղտնի անցքերով, ձիերը կապեցին, բարձրացան մարմարիոնէ սանդուղքներով ու կանգ առան ճեմապակով պատած ու հայելիներով պճնուած մեծ դահլիճում։

— Վեզիր,—ասաց թագաւորը,—գնա, հանգստացիր, երկու ժամից յետոյ ճանապարհ ենք ընկնելու։

Վեզիրը խոնարհ գլուխ տուեց ու հեռացաւ, իսկ արքան զգուշութեամբ մօտեցաւ ննջարանի դռանը։ Նրա սիրտը դողդողում էր. ուզում էր քնած գտնել իր Սաֆիէին ու արբշիռ համբոյրների ջերմութեամբ զարթեցնել նրան ու անակնկալ երջանկութեամբ զուարթացնել։ Կամացուկ բաց արաւ դուռը ու ներս մտաւ...

Ո՜, սարսափ։ Սաֆիէ թագուհին արքայական անկողնում մի սևերես սպասաւոր գրկում էր քնած. մեղմ մեղմ շնչում էր նա՝ հոլանի բազուկները սիրականի վզովը փաթաթած, երջանկութեան ժպիտը դէմքին...իսկ առաստաղից կախուած կապոյտ կանթեղը խորհրդաւոր լոյս էր սփռում նրանց վրայ։

Շիկացած մախաթներով քերրեցին հնդիկների արքայի սիրտը։ Կարօտն ու զայրոյթը իրար բախուեցին... Քաշեց սուրը, որ երկուսի գլուխն էլ կտրի մի հարուածով, սակայն ձեռները թուլացան. սուրը ներեց պարսկական գորգի վրայ, դուրս եկաւ դահլիճ և գնաց թուլացած բազմոցի վրայ։ Գիշերուայ ահաւոր լռութիւնը գրկեց նրան։ Նրա գլխից թռան թագն ու գահը, զէնքն ու զօրքը և ապառնալից թշնամին...

Օձի թոյն ունի կինը. վա՜յ ա՛յն տղամարդուն, ում կը խայթի կինը, որովհետև նրա հասցրած վէրքն անբուժելի է։ Այսպիսի միտք անցաւ Շահզինան թագաւորի գլխով։

Երբ երկու ժամից յետոյ վեզիրը բարձրանում էր սանդուղքով, ներսից մի այնպիսի քրքիջ բարձրացաւ, որից սարսուռ անցաւ վեզիրի մարմնով, բոլոր սենեակները դղրդացին. Սաֆիէն արթնացաւ իր սիրականի գրկում, և պարտէզի ստուերներում հանգչող թռչունները սոսկումի աղաղակ բարձրացրին...։

Սահակ Թորոսեան

1916 թ. 23 յունուարի, Թիֆլիս

## Մամուլ

Հայ ազգի Հայաստանում կրած աւերումները ու սարսափները ու նրա անհոյլի չափերով տուած զոհերը գրաւել են և Ռուսաստանի կառավարչական «Правительственный Вѣстникъ» թերթի ուշադրութիւնը, որը իր վերջին համարներից մէկում այդ հարցին նուիրել է մի շատ հետաքրքրական յօդուած, որի մէջ ասուած է, ի միջի այլոց, հետևեալը.

«Ռուսաց Կայսր Պետրոս Մեծը և Կայսրուհի Եկատերինա Բ., խնելով հայերի աղերսանքները, փորձեր արին թեթևացնել Հայաստանի վիճակը, բայց հէնց այդ նպատակաւ նախաձեռնուած պատերազմները Պարսկաստանի դէմ չը կարողացան վերջնականապէս լուծել հայոց հարցը իր ամբողջութեամբ։ Ռուսները այդ ուղղութեամբ նախաձեռնեցին վճռողական քայլեր միմիայն ԺԹ. դարի սկզբին, երբ թագաւոր կայսր Աղէքսանդր I 1808 թւին իր հրովարտակում արտայայտեց իր վերաբերմունքը հայոց հարցի վերաբերութեամբ հետևեալ նշանաւոր խօսքերով.

«Քրիստոնեայ նահանգները, որոնք դիմել են Իմ հովանաւորութեան և Իմ պաշտպանութեան, չեն կարող ոչ պաշտպանութիւնից ոչ էլ հովանաւորութիւնից զուրկ մնալ».

Եւ իսկապէս, շուտով հայկական գաւառները Պարսկաստանում ազատուեցին Պարսից լծից և միացուեցին Ռուսաստանին. (Գիւլիստանի դաշնագիր, Թիւրքմանչայի 1828 թուի պայմանագիրը)։ Անեղի դժբաղդ դրութեան մէջ էին մնացել այն

հայկական նահանգները, որոնք գտնւում էին Տաճկաց իշխանութեան տակ։ Ռուս-տաճկական պատերազմը 1876—78 թւին տաճկահայերին չտուեց բաղձալի ազատութիւնը տաճկաց լծից։ Բեռլինի վեհաժողովը պարտաւորացրեց Թիւրքիային հայկական նահանգներում մտցնել բարենորոգումներ և բարեփոխութիւններ և հարկադրեց այդ նահանգները Թիւրքիայում դնել Եւրոպայի վերահսկողութեան (կոնտրոլի) տակ, բայց Բեռլինի վեհաժողովը ոչ միայն ջլատեց Ռուսաստանի հայոց հարցում բարերար ազդեցութիւնը, այլ և դատապարտեց Հայաստանը օրհասական ողբերգական վիճակի։

Տաճկական «բարեփոխութիւնների» ծանրութեան տակ Հայաստանը վերջին տասնեակ տարիների ընթացքում բառի բուն նշանակութեամբ արիւնաքամ եղաւ։ Եւրոպական ներկայ մեծ պատերազմը օրհասական հետևանք ունեցաւ Հայաստանի համար, ուրտեղ տեղի ունեցան տաճիկների և քիւրդերի ձեռքով կատարուած կոտորածները և պատմութեան մէջ չեղած զարհուրելի չափերի հասան։ Ապա՝ պէտք է այժմ յուսալ, որ Եւրոպական հրդեհից առաջացած ցոլքը կը դառնայ Հայաստանի համար նոր քաղաքական կեանքի առաջին արշալոյսը և բազմաչարչար հայոց ազգի ողբերգական պատմութիւնը, որը անցեալում ունի այնքան քիչ լուսաւոր էջեր, կը կորցնէ իւր արիւնաթաթախ ճաճանչը։

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԵԱՆՑ ՑՈՒՑԱԿ

Հոգելոյս Կարապետ Եպիսկոպոս Տէր-Մկրտչեանի երկերի հրատարակութեան ֆոնդի օգտին Վերին-Ագուլիսում հանգանակուած նուէրները.

Առևտրական Տուն Ս. Հախնազարեանց, Ա. Արևանց, Ա. Ներսիսեանց և ընկերութիւն 30 ռ., Կ. Հ. Բ. Ընկերութեան Վերին-Ագուլիսի վարչութիւն 10 ռ., բժիշկ պ. Աւետիս Տէր-Յովհաննիսեան 10 ռ., պ. Վաղարշակ Ասլանեան 5 ռ., Ս. Թովմա Առաքելոյ Վանք 3 ռ., պ. Աղէքսանդր Տէրեան 3 ռ., պ. Գրիգոր Ղ. Ղազարեան 3 ռ., Տէր-Մելքիսեդեկ քահանայ Թումանեան 2 ռ., պ. Յարութիւն Գէորգեան 2 ռ., տիկին Աշխէն Բեգիրգանեան, պ. Յովհաննէս Տէր-Զաքարեան, պ. Աւետիս Փանեան, պ. Մարտիրոս Հախնազարեան, պ. Տիգրան Միքայէլեան, պ. Յարութիւն Բալանթարեան և պ. Արշակ Սարգսեան մէկ-մէկ ռուբլի, գումարը 75 ռ., որ ուղարկուեց Թիֆլիսի յանձնաժողովի գանձապահ պ. Մ. Բալանթարեանի հասցէով։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ
Հրատարակիչ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

# Յայտարարութիւններ

ՅԱՒԵԼՈՒԱԾ № 13

# „ՀԱՄԲԱՒԱԲԵՐ“-Ի

## ԱՆՈՒԱՆԱՑՈՒՑԱԿ ԱՊԱՍՏԱՐԱՆՆԵՐԻ ՓԱԽՍՏԱԿԱՆ ՈՐԲ ԵՐԵԽԱՆԵՐԻ

Թիֆլիսի Հայ Եկ. Միաբանութիւնների եւ Հոգաբարձութիւնների Ցանձնաժողովի

## ԱՊԱՍՏԱՐԱՆ

(Շարունակութիւն)

| № | ԱԶԳԱՆՈՒՆ ԵՒ ԱՆՈՒՆ | Ծննդա-վայր | Տարիքը | Ծնող կայ թէ ոչ | Ծնողների տեղը | Գրագէտ | ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ |
|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | Ալլահվերդեան Գոհարիկ | Բերդ | 8 | | | ոչ | |
| 2 | Ալլահվերդեան Քնարիկ | » | 6 | | | » | |
| 3 | Ալէքսանեան Սարգիս | | 11 | | | » | |
| 4 | Արտաշեան Անուշաւան | Գոփալ | 10 | | | այո | |
| 5 | Արտաշեան Նիկողայոս | » | 6 | | | ոչ | |
| 6 | Աւետիսեան Ասքանազ | Խաչլու | 11 | | | այո | |
| 7 | Աւետիսեան Թագուհի | Վան | 6 | | | ոչ | |
| 8 | Աւօեան Արուսեակ | Ղալասար | 10 | | | » | |
| 9 | Բաբօեան Արիստակէս | Բայազիդ | 6 | | | » | |
| 10 | Բաբօեան Յովհաննէս | » | 14 | | | » | |
| 11 | Բաբօեան Վրթանէս | » | 6 | | | » | |
| 12 | Բաղդասարեան Ֆարֆուր | Դարան | 10 | | | » | |
| 13 | Զատիկեան Հռիփսիմէ | Շաւշէգ | 12 | | | ոչ | |
| 14 | Զատիկեան Մարիամ | » | 5 | | | » | |
| 15 | Զատիկեան Նունէ | » | 7 | | | » | |
| 16 | Զոհրաբեան Աղաջան | Ճլոխան | 8 | | | » | |
| 17 | Խաչատրեան Ազնիւ | Այգեպատ | 11 | | | » | |
| 18 | Խաչատրեան Լեոն | » | 6 | | | » | |
| 19 | Խաչատրեան Շողակաթ | » | 14 | | | » | |
| 20 | Խրճեան Անդրանիկ | Բերդ | 10 | | | » | |
| 21 | Համբարեան Սմբատ | Եաղան | 9 | | | » | |
| 22 | Ղազարեան Դաւիթ | Զիրօ | 11 | | | այո | |
| 23 | Ղարփուզեան Յովհաննէս | Ղարաքիլիսէ | 10 | | | » | |
| 24 | Մանուկեան Սարգիս | Հարսնաքար | 6 | | | ոչ | |
| 25 | Մելիքեան Յովհաննէս | Կարին | 8 | | | » | |
| 26 | Մինասեան Արուսեակ | Հարադու | 9 | | | » | |
| 27 | Մինասեան Եսայի | » | 15 | | | այո | |
| 28 | Մինասեան Յովհաննէս | » | 9 | | | ոչ | |
| 29 | Մկրեան Խաչիկ | Քեմլիկ | 13 | | | այո | |
| 30 | Մկրտչեան Աւետիք | Բերդակ | 7 | | | ոչ | |
| 31 | Մկրտչեան Վաղինակ | Բերդակ | 7 | | | » | |
| 32 | Մոմսիսեանց Կարապետ | Զաղգիւղ | 10 | | | այո | |
| 33 | Մուշեղեան Նահապետ | Կողակ | | | | | |
| 34 | Յարութիւնեան Զուլումաթ | Խաստուր | 6 | | | ոչ | |
| 35 | Յարութիւնեան Վարդան | Քերծ | 9 | | | » | |
| 36 | Յարութիւնեան Սմբատ | Խաստուր | 12 | | | » | |
| 37 | Յովհաննիսեան Մխիթար | Մոլլուման | 12 | | | » | |
| 38 | Նազարեան Ազգինէ | Բիթլիս | 8½ | | | » | |
| 39 | Նազարեան Արտաշէս | » | 7 | | | » | |
| 40 | Նազարեան Յուսիկ | » | 8 | | | այո | |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| 41 | Նորամիրեան Հրանտ | Վան | 12 | | | այո |
| 42 | Նորամիրեան Նուարդ | » | 14 | | | » |
| 43 | Զըթճեան Անդրանիկ | Վան | 8 | | | ոչ |
| 44 | Սահակեան Վարդուհի | Սալմաստ | 4 | | | » |
| 45 | Սահակեան Վարսենիկ | » | 6 | | | » |
| 46 | Սահակեան Շուշանիկ | Հաֆտուան | 7 | | | » |
| 47 | Սամարճեան Վազգէն | Վան | 6 | | | » |
| 48 | Սարգսեան Ղուկաս | Բերդ | 10 | | | այո |
| 49 | Տէր-Խաչատրեան Աւետիս | Զիտկան | 10 | | | » |
| 50 | Տէր-Խաչատրեան Յովակիմ | » | 9 | | | » |
| 51 | Տէր-Ղազարեան Մուշեղ | Կոփ | 7 | | | ոչ |
| 52 | Տէր-Ղազարեան Նուարդ | » | 9 | | | » |
| 53 | Տէր-Մանուէլեան Տիրան | Օքրոպակերտ | 12 | | | այո |
| 54 | Տէր-Սահակեան Գասպար | Լզու | 6 | | | ոչ |
| 55 | Տէր-Սահակեան Գէորգ | » | 8 | | | » |
| 56 | Տէր-Սահակեան Սերովբ | Լզու | 8 | | | » |
| 57 | Տիգրանեան Ասանէթ | Մանազկերտ | 9 | | | » |
| 58 | Տիգրանեան Վիկտորիա | » | 8 | | | » |
| 59 | Տօնօեան Մխիթար | Խաստուր | 12 | | | այո |
| 60 | Օսկոյեան Վաղարշակ | Ղարաքիլիսա | 6 | | | ոչ |

Թիֆլիսի «Օրիորդաց կոմիտէի» որբանոց

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | Աւագեան Կարապետ | Վան | 11 | չունի | — |
| 2 | Բարսեղեան Աստղիկ | Ոսկեբակ | 8 | » | — |
| 3 | Բարսեղեան Զարդար | Արփայ | 11 | ունի | չը գիտէ |
| 4 | Բարսեղեան Եւգինէ | » | 7 | » | » |
| 5 | Բարսեղեան Մարինէ | » | 5 | » | » |
| 6 | Բարոյեան Նուբար | Հայոց-Ձոր | 14 | չունի | — |
| 7 | Բեգլէեան Ծովինար | Գեաւաշ | 11 | » | — |
| 8 | Գէորգեան Վալենտին | Վան | 6 | հայր | — |
| 9 | Գէորգեան Գոհարիկ | » | 5 | » | » |
| 10 | Գէորգեան Արշալոյս | » | 13 | ունի | — |
| 11 | Գէորգեան Ռուբէն | » | 10 | " | » |
| 12 | Դարմոյեան Վարդանոյշ | Շատախ | 14 | մայր | — |
| 13 | Դարմոյեան Սեդրաք | » | 8 | » | — |
| 14 | Թամաջեան Վարդան | Վան | 5 | — | — |
| 15 | Թամաջեան Երանուհի | » | 11 | — | — |
| 16 | Թամաջեան Գաբրիէլ | » | 7 | — | — |
| 17 | Խաշարբեան Բենեամին | » | 12 | հայր | — |
| 18 | Խաշարբեան Ներսէս | » | 9 | » | — |
| 19 | Խաչիկեան Սիրանոյշ | Գեմախ | 8 | մայր | — |
| 20 | Խիշարեան Մարգարիտ | Ախորեան | 12 | — | — |
| 21 | Խուգէեան Գրիգոր | Բաղէշ | 9 | հայր | — |
| 22 | Կուժիկեան Զելեա | Շատախ | 12 | ունի | — |
| 23 | Կրզոյեան Աղաւնի | » | 14 | չունի | — |
| 24 | Ղարախանեան Լուսնթագ | Հայոց-Ձոր | 11 | — | — |
| 25 | Միհրանեան Երանուհի | Վան | 9 | մայր | — |
| 26 | Մարտիրոսեան Մովսէս | Հայոց-Ձոր | 5 | — | — |
| 27 | Մահտ.-Մկրտչեան Սաթենիկ | Վան | 13 | հայր | — |
| 28 | Մանուկեան Սաթենիկ | Բայեարանց | 10 | — | — |
| 29 | Յարութիւնեան Թովմաս | Վան | 12 | մայր | — |
| 30 | Յարութիւնեան Արէգնազան | » | 6 | » | » |
| 31 | Յարութիւնեան Սիրանոյշ | Վան | 8 | » | » |
| 32 | Նիկողոսեան Լուսնթագ | » | 11 | չունի | — |
| 33 | Նիկողոսեան Նոյեմզար | » | 8 | » | » |
| 34 | Փօղոսեան Իսկուհի | Անտական | 12 | — | — |
| 35 | Սահակեան Խաչիկ | Արճէշ | 7 | — | — |
| 36 | Սահակեան Վաղարշակ | Սալմաստ | 10 | մայր | — |
| 37 | Սահակեան Հրանտ | » | 8 | » | » |
| 38 | Սահակեան Սուրէն | » | 6 | » | » |
| 39 | Սարօեան Գասպար | Հայոց-Ձոր | 14 | — | — |
| 40 | Ստեփանեան Յովսէփ | Վան | 8 | հայր | — |

## Թիֆլիսի Տիկնանց միութեան նորաբաց որբանոցի ցուցակ

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1 | Աւետիս Սարգսեան | Նոր-գիւղ | 11 | |
| 2 | Արտաշէս Գէորգ. Կակոյեան | Վան | 13 | |
| 3 | Անդրանիկ Պուռնուզեան | Մեծկայ | 11 | |
| 4 | Արմենակ (ազգանունը չը գիտէ) | | 6 | |
| 5 | Ալմաստ Յովհաննիսեան | Վան | 6 | չունի |
| 6 | Արուսեակ Խալաթեան | Մուշ | 11 | հայր |
| 7 | Աշխէն Վարդանեան | Վան | 6 | |
| 8 | Արուսեակ Մինասեան | | | |
| 9 | Գրիգոր որդի Ջոջ աղայի | Աւանց | 10 | |
| 10 | Գեօզալ Մինասեան | Ալճավազ | 10 | |
| 11 | Դիլբեր Արթօյեան | անյայտ | 6 | հայր |
| 12 | Եղիսաբեթ Թումասեան | Մարմութ | 10 | |
| 13 | Խաչատուր Յակովբեան | Քեօշկ | 11 | |
| 14 | Լուսիկ Մինասեան | Ալճավազ | 13 | |
| 15 | Հայկանոյշ Կակոյեան | Վան | 10 | |
| 16 | Համեստ Արսէնեան | Վան | 6 | |
| 17 | Մարիամ Սերովբեան | Տուրախան | 12 | |
| 18 | Մարտիրոս Գրիգոր Պօղոսեան | Ալաշկերտ | 12 | |
| 19 | Մառուս Մարկոսեան | Մելէքէնդ | 6 | |
| 20 | Յարեթ Գրիգորեան | | 6 | |
| 21 | Յասմիկ Մինասեան (կին) | Ալճավազ | | |
| 22 | Նուարդ Էսրէթեան | Մշոյ դաշտ | 7 | հայր |
| 23 | Սինամ Մինասեան | | 3 | |
| 24 | Սիրանոյշ Խալաթեան | Մուշ | 7 | |
| 25 | Սելիմ Մխիթարեան | Մշոյ գիւղ. | 12 | |
| 26 | Սուրէն Գէորգեան | Վան | 6 | |
| 27 | Սիրանոյշ Յովհաննիսեան | Շատախ | 9 | |
| 28 | Սերովբէ Մելիքեան | Մեծկայ | 11 | չունի |
| 29 | Սիրաք Գրիգորեան | Արճէշ | 7 | չունի |
| 30 | Սաթենիկ Յարութիւնեան | Պարսկաստ. | 9 | |
| 31 | Վարդան Մովսիսեան | Վան | 8 | |
| 32 | Թավրեզ Յովլեան | Սիրան | 14 | մայր |
| 33 | Արեգնազան Խաչիկեան | Վան | 8 | |
| 34 | Փայլածու Տէր-Թումասեան | Շատախ | 11 | |